1916

№ 21.—Մայիսի 22

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ | ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ | 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 5 *րուբլի*, կէս տարուան 2 *ր.* 50 *կ.*, *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝* տարեկան 3 *ր.*, կէս տարուան 2 *ր.*: *Արտասահման՝* տարեկան 5 *ր.*, կէս տարուան 3 *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաքրաղեան հրապար.* № 7.
**Հեռախօս № 29.**

*Փոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից:*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են մեկ ամիս խմբագրատանը, իսկ փոքրերը անմիջապէս ոչնչացւում:*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ*

## ՏԱՐԵԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԸ

ԿՈՎԿ. ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*նշանակուած է*

Այսօր, 22 մայիսի, առաւօտեան ժամը 11-ին:



Roverand MAC-CALLUM
ՎԵՐԱՊԱՏՈՒԵԼԻ ԴՈՔՏՈՐ ՄԱԿ-ՔԱԼԼՈՒՄ
ՀԱՅ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻՆ ՆՊԱՍՏՈՂ
Ամերիկական ընկերութեան ներկայացուցիչ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՓՐԿՈՒԹԻՒՆԸ

### I

*Պատմական զարգացումը բերում է գաղափարների և հասկացողութիւնների յեղաշրջում։ Այսպէս է և այն հնագոյն համայնական հիմնարկութիւնը, որի անունն է* բարեգործութիւն...

*Բարի գործեր կատարել հարկաւոր է, առանց բարի գործերի աշխարհը դժոխք կը լինի կատարելապէս։ Այսպէս էին ուսուցանում բարոյագէտները ամենահին ժամանակներից։ Սակայն մարդը սովոր չէ գործել առանց օգտի, փոխարինութեան հեռանկարի։ Ամեն մէկն ասում էր իր մտքի մէջ.—Շատ լաւ, բարի գործեր պէտք է կատարել. բայց ինչ օգուտ, եթէ ես բարի գործեր կատարեմ։*

*Եւ նրան ասում էր հին բարոյագիտութիւնը.—Փոխարինութիւն դու կը ստանաս մանաւանդ հանդերձեալ աշխարհում։* Այստեղ *պիտի բարի գործեր կատարես, որպէս զի* այնտեղ *հոգիդ փրկուի։*

*Հոգի, հանդերձեալ աշխարհ, դատաստան, անեղ և յաւիտենական պատիժներ, կպրէ կարաս, գեհենի բոցեր... Այս բոլորը սարսափեցնում էր հին, նախապաշարուած մարդուն և նա ջանքեր էր գործ դնում մի կամ մի քանի լաւ գործեր կատարել այս աշխարհում, որպէս զի իր հոգին փրկուած լինի հանդերձեալ աշխարհում։ Դեռ Քրիստոսից մի քանի հազար տարի առաջ Եգիպտոսում մեռելը տանում էր գերեզման, իր հոգու ապագայ երջանկութիւնը հաստատած իր մի քանի գործերի վրայ։ Մարդը կատարեալ հնարաւորութիւն ունէր քաղցով սպանելու մի որբի, մի այրու, բայց չարաւ. հաց տուեց նրան, ապրեցրեց։ Սա բարի գործ էր, և շնորհապարտ աստուածութիւնը այդպիսի բարերարի հոգուն երջանկութիւն պիտի տար մինչև ժամանակների վերջը։ Բարերար լինելու այսպիսի միջոցներ շատ էր հայթայթում կեանքը, ուր գոյութեան գազանային կռիւը բորբոքուած ու եռում է ամեն րոպէ, ամեն վայրկեան։*

*Ահա մարդը ուժեղ է, յաղթել է իր նմանին, նրան իր ստրուկն է դարձրել։ Ինչ ուզէ կանէ. օրինակ հենց աշխատեցնել օր ու գիշեր, անդադար։ Բայց ահա նա խղճացել է ստրուկին, անչափ չէ աշխատեցրել։ Սա բարերարութիւն է և սրա համար էլ պատրաստ իսկ հոգու փրկութիւն։ Մի աման ջուր տալ, մի հիւանդ բժշկել, քաղցածին խղճալ—բոլորը բարեգործութիւններ են, բոլորի համար մի անագին, անանցանելի պարգև կայ—հոգու փրկութիւն...*

### II

*Ժամանակներ անցան, մարդկութիւնն աւելի աճեց, աւելի հասունացաւ։ Երէկուայ սուրբ ճշմարտութիւնները անարժէք դարձան, ծիծաղելի նախապաշարմունքներ համարուեցին։ Դժոխք, արքայութիւն, հոգի, գեհեն ու երանութիւն—բոլորը մի կողմ դրուեցին, հաւատացողին թողնուեցին։ Կոյր հաւատը վերացաւ, փորձն ու քննութիւնը քանդեցին հին պաշտամունքները։*

*Աւերանքն ընդհանուր էր։*

*Ի՞նչ եղաւ հին, ալեոր բարեգործութիւնը։ Նա մնաց, որովհետև հարկաւոր էր մարդկութեան։ Մնաց իր անունով—բարեգործութիւն։ Մնաց դարձեալ իբրև* փրկութիւն։ *Բայց ընդունեց նոր բովանդակութիւն։*

*Հոգու փրկութիւն, հանդերձեալ կեանք—թողնենք այդ բաները մի կողմ։ Մի՞թէ այս աշխարհում քիչ են փրկութիւն պահանջող անհրաժեշտութիւնները։ Կեանքը պահանջում է որ ինքն առողջ լինի, ունենայ զարգանալու, առաջադիմելու բոլոր և լիակատար հնարաւորութիւնները։ Այլապէս նա դժբախտութիւն և տանջանք կը դառնայ։*

*Եւ ահա կեանքն առողջ, մշտապէս վերանորոգուող ու առաջադիմող դարձնելու համար հարկաւոր է մարդկանց գործակցութիւնը։ Աղքատութեան, հիւանդութեան դէմ կռուելը մի բարի գործ է բոլորի համար և այդ բարի գործով այս կամ այն անհատական հոգին չէ փրկւում, այլ հասարակաց, համայնական, անխտիր ամենքի—թոյլ թէ ուժեղի, բախտաւորի թէ անբախտի* փրկութեան *համար ամուր հիմքեր են ստեղծւում։ Որովհետև չը կայ մէկի, անհատի փրկութիւն, կայ միայն համայնքով, բոլորով միասին փրկուելու հնարաւորութիւն։ Մէկի երջանկութիւնը կարող է ընդհանուրի երջանկութեան մէջ լինել, որովհետև մէկը ամենքի համար պիտի լինի և ամենքը մէկի համար։*

*Համայնական աղէտներ են անհատների քաղցածութիւնը, հիւանդութիւնները, տգիտութիւնը, վատառողջութիւն և այլասերում առաջացնող ամեն մի պայման։ Եւ հանրային այդ աղէտների դէմ սիստեմատիկ և անխոնջ կռիւներ մղելու մէջ է որ մի ժողովուրդ կարող է գտնել իր իսկական փրկութիւնը։*

### III

*Թող անունները չը նախապաշարեն մեզ։ Թող այդ կռիւը, մրցութիւնը յանուն հասարակաց փրկութեան կո-*

չուի հին, դուցէ շատ ծամծմուած ու մաշուած անունով—բարեգործութիւն։ Վերնագրից ինչ վնաս, եթէ մենք կը կարողանանք նրա տակ զետեղել ժամանակակից գեղեցիկ ու կենսական գործ։

Բարեգործութիւնը մեզնում էլ բարեշրջման է ենթարկուել։ Մեր ըմբռնողութիւնը, մեր վերաբերմունքը այսօր նոյնը չեն, ինչ էին երէկ, անցեալ օր։

Եւ անդադար առաջ գալով բարեփոխման, աւելի և աւելի առողջ գաղափարների կիրառման ճանապարհով, այսօր մենք պիտի առանձնապէս մի բարեփոխութեան վրայ աշխատենք։

Հին բարեգործութիւնը ամբողջովին անհատական կամքի և տրամադրութեան գործ էր, որովհետև նա նկատի ունէր անհատական նպատակ և տրամադրութիւն։ Եթէ մէկը յօժարութեամբ էր «բարերարութիւն» անում, այդ պարզապէս նրանից էր, որ նա սիրում էր իր հոգին։ Սակայն նրա դիմաց կային բիւրաւորներ, որոնք իրանց հոգին սիրում էին բոլորովին ուրիշ կերպով—լինելով մինչև գերեզմանի ափը կեղեքիչ եսամոլ, զրկող ու յափշտակող և ոչ թէ տուող։ Այն ժամանակ բարի գործեր կատարելը ցանկութիւն էր։

Մինչդեռ այսօր, հիմնովին փոփոխուած հասկացողութիւնների և համայնական պայմանների մէջ ամեն մի ժողովուրդ պահանջ պիտի դարձնէ բարի գործերը իր փրկութեան համար։ Ներկայումս ամբողջ աշխարհը կամաւոր գործակցութեան եղանակից անցնում է պարտադիրի եղանակին։ Այնտեղ, ուր հասարակաց փրկութեան հարցն է դրուած, անհատը չէ կարողանում այլ ևս իր կամքը, իր տրամադրութիւնը հարցնել, այլ պիտի ենթարկուի իր ժողովրդի կամքին ու տրամադրութեան, պիտի պարտադիր համարէ այն, ինչ հարկաւոր է ընդհանրութեանը, դրա մէջ և իրան, անհատին փրկելու համար։

IV

Ապրում ենք մի զարհուրելի ժամանակում, երբ համայնական պարտաւորութիւններն են հրամայում ամեն տեղ, և անհատականութիւնը յետ է քաշուել, մոռացուել։ Ուրիշ կերպ չէ կարող փրկութիւն գտնել այսօրուայ ոչ մի հասարակութիւն։ Միլիոնաւոր մարդիկ պատերազմում են, միլիոնաւոր մարդիկ կազմակերպում են հասարակական այնպիսի կացութիւն, որ միայն փրկարար կարող է հանդիսանալ այսօր, երբ ազգերի կեանքն է վտանգուած։

Առանց հերոսական ջանքերի, առանց անհուն զոհողութիւնների այլ ևս չէ կարելի ապրել։ Եւ ամեն օր աւելի և աւելի ապշեցուցիչ չե՞ն դառնում ահռելի կորուստները, որ մարդկութիւնը յօժարութեամբ կրում է իր գործի համար։ Մնա՜ց այլ ևս մի ծանրութիւն, որի առջև կանգ առնէր ֆրանսիացին, բելգիացին, ռուսը։ Մարդ, հարստութիւն... ամեն ինչ, ամեն ինչ պարտաւոր է հաւաքուել, գործել, զոհուել, որովհետև առանց այդպիսի աշխատանքի՝ մահ կայ միայն...

Այսպիսի մի ժամանակ հայ հասարակութեան փրկութիւնն էլ պիտի խօսէ խիստ, անողոք պահանջի լեզուով։ Նա իրաւունք ունի սպասելու, որ իր համար մոռացուի մանաւորների յարմարութիւնների, զուարճութիւնների, գեղխութիւնների հոգսերը։ Նա պիտի հզօր արգելք դնէ շռայլութեան, պաճուճանքների անմիտ հաճոյքների վրայ։

Ամեն ինչ իր համար, փրկութեան համար։ Դուք ոչ թէ պիտի բարեհաճէք բարեգործութիւն անելու, դուք պարտաւոր էք։

Պարտաւոր էք ամենից առաջ և ամենից շատ հենց ձեր սեփական օգտի, ձեր փրկութեան համար։

Ազգերի ճակատագիրը յեղաշրջման ահաւոր ճանապարհն է մտել։ Մենք էլ կանգնած ենք մեր պատմութեան դրած ահեղ հարցի առջև—«լինե՞լ թէ չը լինել»։—Կը լինենք, եթէ գործել իմանանք։

Այսօր, երբ այսպէս է մեր ճակատագիրը և ուրիշ կերպ լինել չէ կարող, կիմանա՞նք մենք էլ, ուրիշ՝ ապրել ցանկացող և այդ ցանկութեան համար անհուն զոհեր բերող ազգերի նման, հասարակական հզօր պարտաւորութիւններ սահմանել և կատարել, զոհելով նրանց մեր անհատական յարմարութիւնները։

Եթէ այո, այն ժամանակ առաջին նշանը պիտի լինի հին բովանդակութիւնից ազատուող և իրական ազգային ինքնապաշտպանութիւն դարձող բարեգործութիւնը։ Բարեգործութիւն ոչ թէ քմահաճոյքի, տրամադրութեան, այլ համայնական գիտակցութեամբ կորովի և հուժկու պարտաւորութեան։

Տուէք այդ ապացոյցը...

Լէօ

# Ներքին տեսութիւն

## ՄԻ ԵՐԿՈՒ ԽՈՐՀՈՒՐԴ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆԻ ԽՈՐՀՐԴԻՆ

Կազմակերպուած հասարակական բարեգործութիւնը, որ հներում միայն կուլտուրական ժողովրդներին էր ծանօթ, ժամանակի ընթացքում թէ ձևի և թէ գաղափարի կողմից զարգացաւ, հասաւ այժմեան դրութեանը։ Այժմ բարեգործութիւնը, որ մի հասարակական իմաստուն պարտականութիւն է, ոչ միայն նրա մէջ է կայանում, որ անցողակի նիւթական օգնութիւն հասցնի կարօտութեան մէջ գտնուող մարդուն՝ առժամապէս նրա տառապանքն ամոքելու համար, այլ՝ անմիջական նիւթական օգնութիւնը վերապահելով սուր մոմենտներին և արտակարգ դժբախտ դէպքերին՝ գլխաւորապէս ձգտում է էնպէս անի, որ մարդը մշտապէս ազատ մնայ աղքատութեան ու կարիքի երեսից, իր աշխատանքով ապրի, և փոխանակ իր հասարակութեան համար մի անախորժ բեռը դառնալու՝ դառնայ օգտակար անդամ։

Էս տեսակէտից էլ գործին նայելով՝ շատ հասկանալի է, որ Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան կանոնադրութիւնը հենց իր առաջին յօդուածով էսպէս է որոշում Ընկերութեան հիմնական նպատակը.

«§ 1. Ընկերութեան նպատակն է՝ նպաստել լուսաւորութեան տարածմանը Հայերի մէջ Կովկասում և Անդրկովկասում և օգնել նոցա նիւթականապէս»։

Եւ էս նպատակին հասնելու համար նա ուսումնարանների և ուսման գործին է զարկ տալիս, արհեստներ է տարածում, դրա-

կանութիւնն է զարգացնում և տառապեալներին է օգնութեան հասնում։

Ակներև է, որ բազմազան են Ընկերութեան ընտրած ճանապարհները, որոնցով նա ուզում է լուսաւորութիւն տարածել հայերի մէջ, բայց և պարզ է սրա բացատրութիւնը։ Էս բոլոր կէտերը եթէ իր ժամանակին մտել են ընկերութեան կանոնադրութեան մէջ՝ անշուշտ պատճառն էն է, որ էն ժամանակ ուրիշ ընկերութիւններ չը կային մեր մէջ, աշխատանքի բաժանումը չը կար։ Սակայն էսօր, երբ մի կողմից՝ յայտնուել են նոր ընկերութիւններ, միւս կողմից՝ անկարելի բան է, որ մի մարմին կարողանայ էս բոլոր կէտերը ի կատար ածել՝ ձեռնհաս հանդիսանալով առաջադրած ամէն մի ասպարէզում՝ ժամանակն է, և շատ է կարեւոր, որ թէ Ընկ. Խորհուրդը և թէ Ընդհանուր ժողովը ուշադրութեան և քննութեան առնեն Ընկ. ոչ թէ արտաքին ծաւալը, այլ ներքին առողջութիւնը և ազատեն նրան թէկուզ և շատ ազնիւ, բայց աւելորդ հոգսերից*)։

Էդ թէկուզ և շատ ազնիւ, բայց աւելորդ հոգսերը Բարեգործական Ընկերութեան համար առայժմ ես համարում եմ հրատարակչական-գրական գործը։ Արդէն Տեղեկագիրն ինքը հրապարակաւ յայտարարում է, որ հրատարակչական-գրական գործը Բ. Ընկերութեան ամենաթոյլ կողմն է։ Եւ երբէք էլ չի զարգանալու, քանի որ մենք թէ հրատարակչական և թէ գրողների-գրական յատուկ ընկերութիւններ ունենք, որոնք թէպէտև գրականութեան համար միանգամայն աննպաստ ժամանակի պատճառով գրեթէ կանգ են առել, բայց պատերազմը դադարելուն պէս գործի կանցնեն և նրանց կողքին ուղղակի անիմաստ կերեւան Բարեգործականի էդ կէտերը, որ իրեն համար ի միջի այլոց են։

Սրանից յետոյ մի երկու խօսք պէտք է ասեմ ուսումնարանական գործի մասին։

1915 թուականի Տեղեկագրից երեւում է, որ Ընկերութիւնը նպաստ է տալիս 123 դպրոցի և կամ ուղղակի պահում է։ Էդ դպրոցների մէջ շատ քչերն են երկդասեան։ Չեմ ուզում երկար կանգ առնել դպրոցական խնդրի վրայ, թէեւ աւելի ձեռնհաս մարդիկ խօսեն էդ մասին, բայց, իմ կարծիքով, լաւ կը լինէր, եթէ Բարեգործական Ընկերութիւնը աւելի ուշք դարձրած լինէր արհեստների վրայ և արհեստանոցներ բանար։ Ընկերութեան նպատակների մէջ էս կէտը դժբախտաբար գրեթէ մոռացութեան է եղել մատնուած, և միայն վերջերս, գաղթականների գալուց յետոյ են երեւում արհեստանոցները—Թիֆլիս ու Դիլիջան։ Էն էլ ժամանակաւոր են երեւի, որովհետեւ գաղթականների հետ են կապուած։

Ինչու համար եմ էսպէս ասում։ Նրա համար, որ երեք-չորս տարուայ տարրական դպրոցի ուսումը ուսում չի, ոչինչ բան է և գրեթէ միշտ գիւղացի երեխաները դպրոցն՝ էսպէս ասած՝ աւարտելուց մի քանի տարի յետոյ մոռանում են և մնում դարձեալ նոյն տգէտը, բայց երեք-չորս տարուայ արհեստ սովորած տղան արհեստաւոր է և մի կտոր հացի տէր կեանքի մէջ։ Սրա համար էլ լաւ կը լինէր, եթէ դպրոցների թիւը թէկուզ և էդքան շատ չը լինի, բայց եղածները ուժեղ լինեն, իսկ արհեստանոցներ ինչքան կարելի է շատ բաց անել։

Ընդգծելով, որ ժամանակի ու հանգամանքների բերմունքով Ընկերութեան ուշադրութիւնը մեծապէս գրաւել է տառապեալներին օգնելու գործը, հետեւեալ անգամ կը խօսենք նրա կենտրոնական գրադարանի մասին, որ միակ բանուկ հայկական գրադարանն է Թիֆլիսում, և նրա մի գեղեցիկ ձեռնարկութեան—իր ճիւղերի միջոցով դպրոցական-գիւղական գրադարաններ հաստատելու մասին։

Յովհ. Թումանեան

*) Խմբագրութիւնս համամիտ չէ յօդուածի յարգելի հեղինակին և կարծում է, որ միենոյն նպատակին կարող են ծառայել մի քանի ընկերութիւններ և ամէն մի ընկերութիւն իր անելիքը կ՚ունենայ, եթէ ի նկատ առնենք, որ մեր կրթական և կուլտուրական կարիքները շատ և մեծ են, գործելու շըրջաններն էլ լայնատարած։ Խմբ.

# ՄԻ ԴՐՈՒԱԳ

Հայկական մեծ ողբերգութիւնը ունի մի քանի դրուագներ—կռուի, հերոսական ըմբոստացման դրուագներ—որոնք իրենց բացառիկ ու եղերական վեհութեամբ «զարդ» կըլինին ոչ միայն մեր ազգային եղեռնապատումի, այլ և ընդհանուր, համաշխարհային պատմութեան։ Երբէք, երբէք մարդկութեան ոչ մի հատուածը չի ապրել այդքան մռայլ, սասանեցուցիչ վայրկեաններ, երբէք Միքէլ Անջելոների խօլական վրձինն անգամ չի յօրինել այնքան ցնցող, արհաւրալի տեսարաններ, ինչպէս այդ մի շարք հայկական օվազիսները, որ ստիպուած պարզել էին ինքնապաշտպանութեան դրօշը արեան ու Զուլումի ովկիանում, կռւում էին պատուով մեռնելու մտահոգութեամբ և տաշեղի պէս օրօրւում էին գահավիժուող ալիքների վրայ, կռւում էին ամբողջ ամիսներ սովի ու բիւր զրկանքների մէջ, աչքերը յառած դէպի բոլոր հորիզոնները, առանց փրկութեան ո և է յոյսի, կըռւում էին, ուժասպառւում և ի վերջոյ՝ կամ ազատւում էին հրաշքով, կամ թէ մարում աստիճանաբար ու կուլ գնում ալիքներին…

Աւելի սրտաճաք պատկերներ դժուար է գտնել ոչ միայն ազգերի տարեգրութեան մէջ, այլ և մարդկային երեւակայութեան աշխարհում անգամ։ Եւ սակայն նրանք եղել են, նրանք երէկուայ և գուցէ նոյնիսկ այսօրուայ իրականութիւն են մեր հայկական հորիզոններում, ուր ասես մի չարաշուք Նախախնամութիւն ստեղծել է ամենախտացած, ամենասահաւոր ձեւերը մարդկային վշտի, տառապանքի ու հոգեվարքի…։

Վան, Շատախ, Սասուն, Զէյթուն, Շապին-Գարահիսար, Սուէտիա… Ահա այդ մարտական օվազիսները։ Ոմանք ազատուեցին զէնքի ուժով, երկար, անդուլ, հերոսական դիմադրութեամբ։ Ոմանք էլ թշնամուց ոտնակոխ եղան ու անդունդ գնացին։

Յուզիչ է ամենքի ճակատագիրն էլ։ Այդ ճակատագրի մանրամասները դեռ անյայտութեան բաժին են։ Ինչպէ՞ս կռուեցին ու ընկան Զէյթունը, Սասունը, Շապին-Գարահիսարը—յետոյ միայն կիմանանք։ Ասողներ կան—և մենք հաւատում ենք—որ մեր դոյզ չքնաղ լեռնավայրերը դեռ չեն մեռած, որ բազմաթիւ սասունցիներ դեռ պահւում են հեռաւոր խորշերում*), որ հպարտ զէյթունցիների մի մասը դեռ կռւում է զէնքը ձեռին, ապաւինած իր անառիկ բարձունքներին… Սքանչելիօրէն գեղեցիկ է եղել և Շապին-Գարահիսարի ու Շանահի լեռնաբնակ հայոց (Տրապիզ. շրջ.) երկարատեւ դիմադրութիւնը. բայց գուցէ ոչ մէկը իր ահաւոր դրամատիզմով չկարողանայ հաւասարուել այն օրհասական կռուին, որ վարել է ապստամբ Սուէտիան և որի վրայ ես կուզեմ կանգ առնել այս հակիրճ յօդուածով։

Դա մի հրաշքի պատմութիւն է, մի լեգենդա։ Ֆրանսիական և շվէյցարական թերթերը հիացմունքով տուին արդէն մի քանի մանրամասները այդ անօրինակ պատմութեան։ Խօսեցին նրա մասին և Եգիպտոսի հայերը Հորիզոնի էջերում։ Բայց մի անգամ չէ, որ պէտք է գրել ու խօսել… Նման դրուագներով ուրիշ ազգերի մէջ ամբողջ սերունդներ են դաստիարակւում.

Մի փոքրիկ շրջան հայկական Կիլիկիայում, բաղկացած եօթ գիւղերից, զուտ հայաբնակ։ Շուրջ 1200 հայ տուն։ Ծովեզերքից ընդամենը մի երկու ժամ դէպի ներս։ Ահա մեզ հետաքրքրող վայրը։

1915-ի յուլիս 17-ին այնտեղ եւս հասնում է կառավարական հրամանը.

—«Գաղթէ՛լ»։

Եօթն օրուայ պայմանաժամ։

Մինչ այդ՝ սուէտացիք իմացել էին արդէն Զէյթունի, Զաբ-Մարզուանի «տեղահանութեան» սարսափները։

*) Ինչպէս յայտնի է, մի քանի հարիւր հոգի արդէն դաշտ են իջած։ Մ. Վ.

ու ապահով, Պորտ Սայիդի շրջակայքում, ֆրանսական հովանու տակ, նուիրուած իր ազնիւ ու բեղմնաւոր աշխատանքին։ Շատ չանցած՝ նա կը վերադառնայ իր սիրած ծննդավայրը — օսմանեան դժոխքից ազատագրուած Կիլիկիա։

Կ'անցնեն տարիներ, տասնեակ ու հարիւրաւոր տարիներ։ Մի բուռն հայութիւնը կ'աճի, կը բազմանայ և կ'աւանդէ յետնորդներին իր պատմական զարմանահրաշ, անհաւատալի պատմութիւնը։ Նա կը պահէ գուրգուրանքով իր սրտում հարազատ հայրենիքի և միւս մեծ, համամարդկային Հայրենիքի՝ Ֆրանսիայի պաշտամունքը։ Նա կը կանգնէ ազատութեան մի կոթող Մուսա-Դաղի բարձունքներում, ճիշտ այն տեղը, ուր վեհօրէն ծածանուել է ֆրանսացիներին հրաւիրող ճերմակ դրօշը։ Ազատութեան սիւնի վրայ կ'արձանագրուին անունները այն քաջ կարիճների, որոնք ընկան մէկ ու կէս ամսուայ անհաւասար պատերազմի մէջ, — և նրանց շարքում ոսկեղէն տառերով մէկը, որ հոգին էր այդ պատերազմի, — Յակոբ Դարագեօզեանը, «Մուէլսիայի առիւծը»։ Մի ուրիշ արձանագրութիւն կը յիշեցնէ հին պատմութեան լեգենդական դրուագը.

— «Անցորդ, լուր տար աշխարհին, որ մենք ընկանք հաւատարիմ մեր բազմատանջ հայրենիքի պատգամներին»...

Թռչնիկը կը ծխէ յաւերժօրէն վերացական դամբարանի շուրջը և պատմէր սերունդները ամեն տարի օգոստոսին ուխտի կ'երթան դէպի Մուսա-Դաղ...

Միքայէլ Վարանդեան

ՖՐԵԴԵՐԻԿ Վ. ՄԱԿԿԱԼՈՒՄ

(Բանբեր-интервью)

Օրերս Վանից վերադարձաւ ամերիկացի Ֆրեդերիկ Մակկալումը, որի լուսանկարը տալիս ենք թերթիս առաջին երեսում։ Սա գործում էր միստր Կրեսսի հետ միասին, օգնելով կոտորածից ազատուած հայերին Ռուսահայաստանում և վերջերս Վանում և իր շրջանում։

Միստր Մակկալում շատ մօտ ծանօթ է մեր ազգի անցեալի և ներկայ կացութեան։ Նա տիրապետում է կատարելապէս հայերէն լեզուին, եղել է մի ժամանակ Պոլսոյ «Աւետաբեր» թերթի խմբագիրը, գիտէ մեր պատմութիւնն ու գրականութիւնը, ունի սեփական հրատարակութիւններ հայերէն, թիւրքերէն և եւրոպական լեզուներով։

Այսպիսի բազմազան լեզուագիտական և տեսական գիտութիւններով հանդերձ, միստր Մակկալումը նախ և առաջ գործի մարդ է, որպէս ամերիկացի, եռանդուն, գործունեայ, իրական ու տեսական աշխարհայեացքով։

Մի ամսուայ ընթացքում ինքը և Կրեսսին միացեալ ընկերութիւնների լիազօրների աջակցութեամբ բաժանել են զանազան գիւղերում 400 եզ, 100 կով, 50 գոմէշ, 10,000 ռուբլու ցորեն և գարի (մօտաւորապէս 4,000 պուդ), որը ցանել են տուել անմիջապէս. բացի այդ բաժանել են զանազան սերմացուներ, մեծ քանակութեամբ գետնախնձոր և եգիպտացորեն։ Տարածել են նոյնպէս մեծ քանակութեամբ խոփ, բահ, մանգաղ և այլ գործիքներ։

Համակրելի հիւրերը մաքրել են տուել քաղաքի ամերիկական շրջանը, ցանկապատ են քաշել և այդպիսով աշխատանքի աղբիւր են ստեղծել անծայր չքաւորների համար։ Մաքրել են տալիս փողոցները, քաղաքը կեղտից ու ցեխից ազատելու համար, որպէս զի տարափոխիկ հիւանդութիւններ չառաջանան. փողոցների երկու կողմով բացում են առուներ, ջրանցքներ, հարթացնում ու մայթում են, և այդպիսով թէ քաղաքն է կանոնաւորւում, թէ ստեղծւում է առողջապահիկ պայմաններ բնակիչների համար և թէ անգործ ու չքաւոր գիւղացիները վաստակ են առանում։

«Մենք մշակել ենք տալիս Արտամէտի և Գուստանի անտէր մնացած այգիները», — ասաց միստր Մակկալումը։ «Պէտք էր ջրել, ցելել, առուները նորոգել և հսկել, որ չկտորէին, ինչպէս իրենց տէրերին, կամ չը չորանային»։

Եւ այդ բոլորն անում են Նիւ-Եօրկից ուղարկուած մի երկու-երեք հոգի, մինչդեռ մեր հայ բանիմացները, հաւատարիմ միս-արիւն դարձած ճառաբանական տենչերին, զուրկ նախաձեռնութիւնից, գիտեն միմիայն ծրագրերով զբաղուել։

Ինձ շատ հետաքրքիր էր իմանալ, թէ ինչ հայեացքներ և ինչ ծրագիր ունի մշակած միստր Մակկալումը աւերած Հայաստանի վերաշինութեան նկատմամբ. ինչպէս ազատել տաճկահայ գիւղացուն վերահաս սովից։ Ես աշխատեցի հետաքրքրել խօսակցիս համագործակցական (կօօպերացիաների) և այլ տնտեսական ընկերութիւնների նախագծերով։ Յարգելի ամերիկացին լսում էր ինձ ժպտալով, բայց մեծ ուշադրութեամբ։

— Տուէք հայ գիւղացուն գործիք, լծկան և սերմացու, և ոչ թէ միայն դուք ազատ կը լինէք նրան կերակրելու հոգսից, այլ և նա ինքը ձեզ կը կերակրի։ Ներկայիս 2 պուդ ցորենը աւելի գործնական նեցուկ է գիւղացուն, քան թէ ապագայի կօօպերացիաներն ու սպառողական խանութները, միմիայն թէ տուէք շուտով այդ երկու պուդ ցորենը։

Զարմանալի մարդիկ են ամերիկացիները. ինչ կրթութեան, դասակարգի ու հոգեբանութեան մարդէլ լինեն, մնում են միշտ գործնական կեանքի անշեղ ուսուցիչներ։

Եւ որքան խորն է ուսումնասիրել հայ գիւղացուն համակրելի հիւրը։ Այսքան ժամանակ անբախտ տաճկահայերը տանջւում, կոտորւում են անծայր կարիքից մեր քթի առաջ, բայց մենք դեռ չենք կարողացել հասկանալ թէ ինչ է նրան հարկաւոր։

Իմ հարցին, թէ որն է ամենադժուարը տաճկահայերի վերաշինութեան գործերից, միստր Մակկալումի ժպիտը մթագնեց և նա պատասխանեց.

— Ամենադժուարը գիւղացիների տների վերաշինութիւնն է, որոնք վերածուած են մոխրակոյտերի։ Տաճկահայը իր ներկայ դրութեամբ հանդերձ, չի կարող մի քար անգամ քարի վրայ դնել։ Գալու է ձմեռը և չարատանջ ժողովուրդը մնալու է ձիւնի մէջ անխուսափելի զոհը սառնամանիքի։ Նոյնը և գիւղացական գործի նկատմամբ, որ պահանջում է նիւթական մեծ օժանդակութիւն շէնքերը վերաշինելու համար։

— Ասացէք, խնդրեմ, ինչ գիտաւորութիւն ունին ամերիկացիները, մանաւանդ ունեւոր դասակարգը, մեր խեղճ ժողովուրդին օգնելու համար։

Միստր Մակկալումը հասկացաւ իմ միտքը և հարցրեց իր հերթին ժպտալով.

— Զարմանում եմ, որ հայ հարուստները այնքան անտարբեր են։ Եթէ ամեն մէկը իր ունեցածի տասը տոկոսը տայ, Հայաստանը կարելի է մի գեղարողոջ Զուիցերիա դարձնել։

— Արդեօք, եղել էք Վանում, — հարցրեց նա կարճ մտածելուց յետոյ։ — Ո՞չ։ Դուք ապրել էք Եւրոպայի ամեն անկիւնում և դեռ չէք տեսել Վանը, Հայաստանի այդ գեղածիծաղ չքնաղ այգին, չէք ծծել նրա ամբիծ ու կուսական օդը, չէք տեսել նրա երկնքի անհուն ու պայծառ փիրուզի կապուտակը, որ առկայծում է ձեր գլխին ալմաստ և շողակն։

Միստր Մակկալում զարմանք է յայտնում հայ գիւղացու անբախտ յոյսերի և աշխոյժի մասին։

— Այսքան դժոխային աղէտներից յետոյ, կոտորածի այն արնոտ աղջամուղջը դեռ չանցած, նայեցէք հայ գիւղացուն, թէ

ինչ աշխոյժով է նորից վերցնում իր բահն ու բրիչը։ Զարմանալի անկուն ժողովուրդ։

Թուրքերը ամեղմանում են և նոր գաղթերի վտանգը կախուած է օդում։

Գ. Օ.

## Կ. Հ. Բ. Ը.-ԹԻՒՆԸ 1916 ԹՈՒԱԿԱՆԻՆ

Կ. Հ. Բ. Ընկ.-թեան 1915 թ. Տեղեկագրից երևում է, որ հաշուետարուայ ընթացքում Խորհուրդը ունեցել է 45 նիստ և Ը.-թիւնը Հայկ. Կենտր. Կոմիտէի հետ զուգընթացաբար իր գործունէութեան մեծագոյն մասը նուիրել է հայ փախստականների մեծամեծ կարիքները հոգալուն։ Միաժամանակ Խորհուրդը ամեն հնարաւոր միջոցներ ձեռք է առել նաև դպրոցական գործը առաջ տանելու, որով դպրոցական գործը 1915 թ. աւելի ընդլայնուել և դպրոցների թիւը աւելացել է 14 դպրոցով։ 1914—15 դպրոցական տարում Ընկ. նպաստով պահւում էին 111 դպրոց, ծախսելով 26,060 ռ., մինչդեռ 1915—16 թ. դպրոցների թիւը հասել է 125-ի 30,050 ռ. նախահաշուով։ Խորհուրդը աւելացրել է մի քանի կենտրոնական դպրոցների տարեկան նպաստները։ Դպրոցական բացը ծածկելու համար դիմած է այլ և այլ հիմնարկութիւնների և անձնաւորութեանց, որոնց արձագանգ են տուել մի շարք ակնառու անձինք, որոնց անուան և պահւում են դպրոցները։ Դպրոցական գործը կատարւում է յատուկ մասնաժողովի ձեռքով, որը հսկել է գործին, հետևել է նորա ներքին կեանքին և աշխատել է պահել բարեկարգ վիճակի մէջ։ Բացի այդ աշխատել է մի շարք դպրոցներում պահել աշակերտական գրադարաններ, օգտուելով այդ նպատակով կտակուած «Անտոնեանց» և «Ենոքեան» գրադարանների գումարից։

Խորհուրդը անտես չէ արել և տաճկահայ մանուկներին— բանալով նոցա համար 34 դպրոց և տալով պաշտօն գաղթական 62 ուսուցչի։

Այլև բացուել են արհեստանոցներ՝ կազմարարական, ծրարներ պատրաստելու, ատաղձագործութեան, կար ու ձևի։

Դպրոցներ պահւում են հետևեալ շրջաններում, Ալէքսանդրապոլի՝ 12 դպրոց, Ախալքալակի՝ 8, Ախալցխայի՝ 2, Ղազախ-Դիլիջանի՝ 17, Գորու՝ 4, Գանձակի՝ 5, Երևանի՝ 4, Նոր-Բայազիդի 19, Վերին Ագուլիսի՝ 4, Կարսի՝ 5, Ղափանի՝ 6, Թիֆլիսի՝ 8, Թելաւի՝ 1, Լոռուայ՝ 2, Կուբանի՝ 2, Հին-Նախիջևանի՝ 2, Ղարաբաղի՝ 3, Մայկոպի՝ 1, Նուխու՝ 3, Շամախու՝ 1, Բաթումի՝ 3, Սղնախի՝ 2, Դուշէթի՝ 3, Վաղարշապատի՝ 5, ընդամենը 123 դպրոց։

Խորհուրդը օգնել է գրականագէտներին և նոցա որբացած ընտանիքներին տալով նոցա 700 ռուբլուց աւելի։

Ուսուցչական ֆոնդից նպաստել է կարօտ ուսուցիչ-ուսուցչուհիներին միանուագ մօտ 1200 ռ.։

Ը.-թեանս գրադարան-ընթերցարանը աւելի ճոխացրել է և ստացուող պարբերական թերթերի թիւը հասցրել 52-ի, իսկ գրադարանը հարստացրել նորանոր գրքերով։ Հաշուետարուայ ընթացքում յաճախել են աւելի քան 40,000 հոգի։

Խուզադեան ապաստարանում թէև կեանքը ընթացել է բնականոն (նորմալ) եղանակով, սակայն սահմանափակել է սանուհիների ընդունելութեան թիւը և հասցրել 16 հոգու։

Ճաշարանը նախկին տարիների նման օգնութիւն է հասցրել մեր ծխական և միջնակարգ դպրոցների աղքատ աշակերտ-աշակերտուհիներին։ 1915 թ. ճաշող աշակերտների թիւը եղել է 326 հոգի, որոնցից ձրի ճաշողներ եղել են 204 և վճարով 122։ Նուազած թանկութեան վճարով ճաշողներից ամսական ստացուել է միայն 3 ռ.։ Տարուայ ընթացքում տրուել է 60,953 ճաշ, որի վրայ ծախսուած է 9789 ռ. 30 կ., իւրաքանչիւր ճաշը նստել է 16 կ.։— Ընկ. հիւանդանոց մտել են տարուայ ընթացքում ընդամենը 707 հոգի, որոնցից 351-ը. վիրաւոր, 2-ը ջարդուածներով և 384 հիւանդներ։ Խորհուրդը իւր բազմաթիւ ճիւղերի հետ աւելի սերտ կապեր հաստատելու համար հրատարակել է «Համբաւաբեր» շաբաթաթերթը։

Տարուայ ընթացքում վախճանուել են երեք բարերար, որոնք իրենց շարժական և անշարժ գոյքերը թողել են յօգուտ Ընկերութեան։

1) Սմբատ Տէր-Առաքելեան, որը կտակել է Ը.-թեանը անշարժ կալուածք 110,000 ռ. արժողութեամբ և 10,000 ռ. կանխիկ դրամ։ 2) Յովհաննէս աւ. քահ. Տէր-Գալստեան անշարժ կալուածք Ախալքալակ գիւղում 20,000 ռ. արժողութեամբ և 3) Եսայի բէկ Թինիբէկեանց, որը կտակել է իւր ամբողջ դրամագլուխը՝ պետական տոկոսաբեր թղթեր և քաղաքային վարկի ընկ. օբլիգացիաներ, որոնք դառնալու են սեփականութիւն երկու բարեգործ. ընկ. միմիայն կնոջ մահուանից յետոյ։

Կ. Հ. Բ. Ը.-թիւնն ունի պատուաւոր անդամներ՝ 15, ցմահական 62 և տարեկան 303 հոգի, ընդամենը 380։ Ընկերութեան կենտրոնի 1915 թուի դեկտեմբերի 31-ի ակտիւը կազմում է 631,193 ռ. 31 կ., որից արժեթղթեր 250,774 ռ. 45 կ., զանազան պարտապաններ 68978 ռ., անշարժ կայքեր 278,726 ռ. 99 կ. և շարժական կայքեր 32,276 ռ. 87 կ.։ Մնում է առ. 31 դեկտեմբերի 1915 թուի ի միջի այլոց հետևեալ գումարները՝ դըպրոցական գումար 97,882 ռ. 68 կ., ուսուցչական ֆոնդ 48,414 ռ. 16 կ., Աւ. Պօղոսեան ֆոնդ 10515 ռ. 23 կ., Արոյեան—Նազարեան ֆոնդ 6,666 ռ. 68 կ., Խոջա-Մինասեանի գումար 15,161 ռ. 20 կ., փախստականների գումար 33,876 ռ. 55 կ. և այլն։

Հաշուետեսները սոյն տարուայ մարտի 14-ից մինչև ապրիլի 22-ը քննելով Ընկերութեան 1915 թ. հաշիւները կազմել են արձանագրութիւն, որով վկայում են նախ՝ որ Ընկերութեան գումարները եղել են ճիշտ և համապատասխան մատեաններում ցոյց տրուած գումարներին, ապա՝ որ արժեթղթերը ստուգուել են փաստաթղթերով և գտնուել ճիշտ, և վերջապէս հաշիւները և ատենանայքն հաշուապահական մասը տարուած են կանոնաւոր և խնամքով։

## ԿԱՐԻՆ-ԷՐԶՐՈՒՄԻ ԳՐՈՒԹԻՒՆԸ

Հայկ. Կենտր. Կոմիտէին իր Կարսի լիազօր պ. Գրիգոր Զամայեանը 15-ին ապրիլի արած զեկուցագրից տալիս ենք քաղուածօրէն հետևեալը.

Մարտի 23-ին ես Կարսից դուրս գալով Բաղուի մահմեդական Բարեգործ. Ընկերութեան ներկայացուցիչ Ալի-խան Կանդեմիրովի հետ, Սարիղամիշի վրայով անցայ Էրզրում՝ տեղական փախստականների դրութիւնն ուսումնասիրելու։

Մեր ուսումնասիրութեան առաջին կէտն էր Սարիղամիշը, ուր փախստականները, Քաղաք. Միութեան սայլակներով, ուղևորւում են Էրզրումից։

Այդ փախստականները Էրզրումի շրջանի զանազան գիւղերից են, որոնք ազատուած են ռուս զօրքերի ձեռքով։

Նրանց կարիքները հոգացւում են Քաղաք. Միութեան և Կ. Հ. Բար. Ընկ. միջոցով։

Կարաուրգան գիւղից մինչև Էրզրում գտնուած գիւղերը մեծ մասամբ ամայի են և քարուքանդ արած։ Նկատելի է այն, որ Կովկասում գտնուած փախստականները հետզհետէ վերադառնում են իրենց գիւղերը վերահաստատուելու և գիւղատնտեսութեամբ պարապելու։ Նրանց միակ ցանկութիւնն է՝ ստանալ սերմացու և գիւղատնտեսական գործիքներ, որից յետոյ խոստանում են ոչ միայն իրենց, այլ և ուրիշներին կերակրել։

Չի կարելի չարձանագրել այն փաստը, որ ամբողջ ճանապարհին, մինչև Էրզրում, վարչական և պատերազմական իշխանութեանց կողմից շատ բարեմիտ ուշադրութիւն էր դարձրած դէպի իրենց վայրերը վերադարձող փախստականները։

28-ին մարտի ես մտայ Էրզրում։ Քաղաքը արտաքուստ շատ քիչ է վնասուած պատերազմական գործողութիւններից։ Հիմքից քարուքանդ է արուած միմիայն Հայոց թաղը, ուր գտնւում է մայր եկեղեցին։ Պահպանուել են ամբողջութեամբ միմիայն Սանասարեան հայոց դպրոցը, ուր այժմ տեղաւորուած է ռուս զօրքի արուեստաւորների (տեխնիկների) հիւանդանոցը և մի մեծ հայոց եկեղեցի, ուր դարսուած էին տաճիկ իշխանութեան հրամանով Էրզրումից արտաքսուած հայերի իրերն և ապրանքները։

Հայոց գերեզմանատան գերեզմանաքարերը թափուած են քաղաքի կենտրոնում, այն տեղում, ուր երիտ. թուրքերի ժողովարանը պիտի կառուցուէր։

Հիմքից քանդուած է ընկած ռուս զինուորների յուշարձանը։

Զինուորական իշխանութեան կարգադրութեամբ տասնեակ տարիներով կիտուած ցեխից և անմաքրութիւնից մաքրւում և կարգաւորւում է քաղաքը։ Բոլոր փողոցներում կան աղբիւրներ, որոնց վրայ կան գրութիւններ՝ «պիտանի են խմելու համար»։ Քաղաքի մէջ կան շատ մզկիթներ և բաղանիքներ։

Խանութներ շատ քիչ կան բացուած. ասում են, որ շատ դժուար է թոյլտւութիւն ստանալ առեւտուր անելու։

Թուրք զօրքերի նահանջից յետոյ Էրզրումում մնացել են 28,131 թուրք, որոնցից 13,291 տղամարդ։

Հայերից մնացել են 5 աղքատ ընտանիք, մի գերձակի և մի նախկին ասկեարի ընտանիք, որոնք մահմեդականութիւն են ընդունել։ Էրզրումից տարագրուած են 3000 ընտանիք (20,000 հոգի)։ Ներկայումս Էրզրումում ապրում են 40—50 հայ, որոնք եկել են զանազան տեղերից և 200 փախստական, որոնք ազատուած են ռուս զօրքերի ջանքերով Մամախաթունի և Աշկալայի շրջաններից։

Քաղաքի մէջ տիրում է սոսկալի աղքատութիւն։ Մեծ թւով երեխաներ, ծերեր և թուրք կանայք բոլոր փողոցներում ողորմութիւն են խնդրում։ Զգացւում է կենսական պիտոյքների պակասութիւն. ինչպէս պատմում են, շատերը կարիքից ստիպուած անբարոյականանում են։ Քաղաքը կառավարւում է բերդապահի (комендантъ) և քաղաքային վարչութեան ձեռքով, որի կազմի մէջ մտնում են տեղացի 9 հոգի թուրք՝ նախագահութեամբ Շէյխ Մահմէդ Ալի փաշայի (առաջ զօրաբաժնի հրամանատար (դիվիզիօննի կոմանդիր)։

Բերդապահ՝ Խան Նաշուտսկին իրաւաբանական կրթութիւն ստացած անձն է։ Նա շատ մռայլ գոյներով էր նկարագրում հայ փախստականների դրութիւնը։ Նա ասում էր, թէ դրանք չունեն ամենաանհրաժեշտ իրերը և ցոյց էր տալիս որոշ միջոցներ նրանց դրութիւնը բարելաւելու։ Միեւնոյն ժամանակ նա հաւատացնում էր, թէ զուր իրեն համարում են հայատեաց… մի քանի կարգադրութիւններ եղել են հակառակ իւր կամքի…

30-ին մարտի, նրա խոստման համաձայն, կայացաւ խորհրդակցութիւն հասարակական և կառավարչական հաստատութիւններից, ուր միաձայն որոշուեց. 1) բանալ հիւանդանոց թէ հայ և թէ թուրք փախստականների համար, 2) հայ փախստականներին ըստ հնարաւորութեան բնակեցնել շրջակայ գիւղերում, հոգալով նրանց անհրաժեշտ կարիքները և տալով նրանց գիւղատնտեսական գործիքներ և սերմացու, 3) փախստականների կարիքների համար յատկացնել կոմիտէին մի բաղանիք։

Այս ժողովի մէջ ցանկութիւն յայտնուեց, որպէսզի բոլոր վերոյիշեալ հիմնարկութիւնները ծառայեն առանձին-առանձին հայերի և թուրքերի համար։ Բարեբախտաբար շուտով յայտնուեց, որ Խան Նաշուտսկին հեռանում է արձակուրդով և նրա փոխարէն նշանակւում է շտաբ-ռոտմիստր Նազարբէկովը, որը շատ կարեկից վերաբերմունք էր ցոյց տալիս դէպի հայերը։ Էրզրումի մէջ գտնուած փախստականների կարիքները հոգում են տեղի կոմիտէտը և Մոսկուայի կոմիտէտի ներկայացուցիչները, սակայն միջոցների սղութեան պատճառով, փախստականների դրութիւնը շատ ողբալի է։ Ամենաանհրաժեշտ իրերից զուրկ. հիւանդներն առանց բժշկական օգնութեան։ Բնակարանները առանց լուսաւորութեան և եթէ չլինէր քաղաքների միութեան սննդատու կայանը, ուր ստանում էին տաք կերակուր և թէյ, սոսկալի կը լինէր այդ թշուառների դրութիւնը։

Էրզրումի անկումից յետոյ այնտեղ ապաստանել են մինչև 800 փախստական, ազատուած Մամախաթունի և Աշկալայի շրջաններից։ Այդ թւից 394 հոգի ուղարկուած են Կովկաս (83 որբ), 200 հոգի բնակւում են Էրզրումում, իսկ մնացածները բնակեցրուած են մերձակայ գիւղերում։

Լեռների մէջ թագնուած և քրդերի մօտ գտնուած հայերին որոնելու համար, իշխանութեան թոյլտւութեամբ, կոմիտէին կից հիմնուած է մի մասնախումբ 6 հոգուց։

Այդ խումբը կարճ ժամանակում յաջողել է փրկել անխուսափելի մահից տասնեակ հայեր։ Ազատուածների պատմածները խիստ ցնցող են։

Այն ամենը, ինչ կատարուել է, գրի անցնել անկարելի է։ Մարդկային պատմութիւնը դեռ չը գիտէ այդպիսի զարհուրելի չարագործութիւններ։ Ընդհանուր դրութիւնը աւելի ծանրանում է նրանով, որ Էրզրումի հայերի կեանքի պայմանները ինչ-որ անբնական են…

Բելգիայի, Սերբիայի և Լեհաստանի տանջանքները նսեմանում են հայերի կրած տանջանքների առաջ։ Պէտք էր փայփայել, հոգի և սիրտ ներշնչել տանջանքի բովից անցած հայութեանը…

Ռուս զօրքերի առաջխաղացութեան հետ փախստականների թիւը հետզհետէ կաւելանայ, որի կենտրոնը կը դառնայ Էրզրում քաղաքը։ Նրանց դրութիւնը բարուօքելու համար անհրաժեշտ է. 1) Էրզրումում բանալ սննդատու կայան, ի նկատի ունենալով, որ Քաղաքների Միութիւնը դժուարանում է շարունակել, 2) բանալ հիւանդանոց և ամբուլատորիա։ Ուղարկել բժիշկ, գթութեան քոյր, 3) տեղական կոմիտէին, յանձին Կ. Հ. Բ. Ը.-թեան ճիւղի, տալ բաւականաչափ գումար, 4) Էրզրումի մէջ ունենալ մի մշտական լիազօր, հմուտ և վստահելի անձնաւորութիւն, 5) ուղարկել անհրաժեշտ իրեր սերմացուի համար, 6) ունենալ սեփական սայլեր Բասենի հովտից մինչև Էրզրում փախստականների կարիքների համար։

Ապրիլի 30-ին թուրքաց Բարեգ. Ընկերութեան ներկայացուցչի հետ միասին ուղեւորուեցինք դէպի Օլթի։ Ամբողջ ճանապարհին համարեա ոչ մի շէն գիւղի չը պատահեցինք։ Ամեն ինչ թողնուած է բաղդի բերման։ Այդ շրջանում չը կայ ոչ հայ և ոչ թուրք ազգաբնակութիւն, բացի Իդ գիւղից, որի 15,000 բնակիչներից մնացել են ընդամենը 2000 թուրք։ Նոյնիսկ հայ գիւղում գտնուեցաւ մի ընտանիք 10 հոգուց բաղկացած, որոնք մահմեդականութիւն ընդունելով միայն կարողացել են իրենց կեանքը ազատել։

Գ. Զամոյեան

---

## ՏՐԱՊԻԶՈՆԻ ՀԱՅԵՐԻ ԹԻՒԸ ՋԱՐԴԵՐԻՑ ԱՌԱՋ ԵՒ ԱՅԺՄ

Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհրդի և Կենտրոնական Կոմիտէի լիազօր Մ. ա.-ք Մելեանը զեկուցանում է Հայ. Կենտր. Կոմիտէին, որ Տրապիզոնի շրջանի 16,000 հայ բնակիչներից կենդանի գտնուած են միայն 506 հոգի.

Հայերի կայքը յափշտակել են թիւրքերը, գիւղերը կրակի ճարակ դարձրել։ Ազատուածներից շատերը բռնի կրօնափոխ արածներ են, իսկ կիներ և աղջիկներ ազատուել են հարեմներում և թիւրքերի տներում բռնութեամբ պահուելով։

Հարկաւոր են կարող մասնագէտներ և հմուտ գործաւորներ գոնեա մասամբ վերաշինելու համար իսպառ աւերուած գիւղական համայնքները։

«Դ ժ բ ա խ տ ո ւ թ ի ւ ն ն այն է,—գրում է հ. Մելեանը,—որ տ ե ղ ա ց ի հ ա յ ե ր չ ը կ ա ն»։

Մինչև ապրիլի 30-ը Ռիզէյից և Տրապիզոնից Բաթում է բերուած 118 որբ, որոնցից 2-ը վախճանուել են, 56 որբ բարեկամներն են առել, իսկ մնացած 60 հոգին տեղաւորուած է Կենտրոնական Կոմիտէի Բաթումի որբանոցում։

Հաւաքուած տեղեկութիւններից իմացւում է, որ Տրապիզոնի շրջակայքում երևան են եկել որբեր, որոնց հաւաքելու և Բաթում տեղափոխելու համար տեղային Կոմիտէն միջոցներ է ձեռք առել։

Բերում ենք այստեղ Տրապիզոնի և իր շրջանի նախքան կոտորածը եղած և կոտորածից յետոյ գտնուած հայերի վիճակագրութիւնը։

| | Գիւղերի անունները | Հայերի թիւը պատերազմից առաջ | | Ներկայումս կենդանի մնացած հայերի թիւը | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Տուն | Հոգի | Տղամարդ | Կին | Տղայ | Աղջ. | Գումար |
| 1 | Տրապիզոն քաղաք | 1200 | 8000 | 13 | 25 | 35 | 19 | 92 |
| 2 | Սիւրմէնէ | 80 | 630 | 17 | 10 | 6 | 6 | 39 |
| 3 | Սիֆթէր | 33 | 265 | 2 | — | 1 | — | 3 |
| 4 | Ապիոն | 40 | 300 | 18 | 5 | 2 | 2 | 27 |
| 5 | Սամէրա | 24 | 190 | 2 | — | — | — | 2 |
| 6 | Ֆիրինծուտ | 25 | 200 | 1 | — | — | — | 1 |
| 7 | Կալաֆիա | 56 | 390 | 20 | 8 | — | 4 | 32 |
| 8 | Քիան | 30 | 178 | 1 | — | — | — | 1 |
| 9 | Տրոնա | 9 | 80 | 3 | — | — | — | 3 |
| 10 | Շանա | 38 | 280 | 30 | 9 | 1 | 1 | 41 |
| 11 | Կիւշանա | 43 | 365 | 3 | — | — | — | 3 |
| 12 | Աֆիանծ | 18 | 110 | — | — | 2 | — | 2 |
| 13 | Սամարուքա | 21 | 170 | 19 | 6 | 2 | 2 | 29 |
| 14 | Ճոշարա | 35 | 265 | 2 | 2 | — | — | 4 |
| 15 | Սկաֆիա | 28 | 200 | 5 | 6 | 2 | 1 | 14 |
| 16 | Կրոմէլա | 40 | 235 | 4 | 2 | 2 | 2 | 10 |
| 17 | Ջէֆանոս | 59 | 365 | 2 | 2 | — | — | 4 |
| 18 | Անիֆա | 23 | 210 | 1 | 1 | 6 | — | 8 |
| 19 | Տէլիպալթա | 10 | 60 | 1 | — | — | — | 1 |
| 20 | Թոփալլի | 7 | 70 | 8 | 1 | 2 | 1 | 12 |
| 21 | Վէրանա | 23 | 180 | 8 | — | 3 | 1 | 12 |
| 22 | Կրոպի | 30 | 210 | 8 | 1 | 4 | 4 | 17 |
| 23 | Մունդա | 3 | 10 | 1 | 1 | 4 | — | 6 |
| 24 | Թոց | 25 | 200 | 7 | 3 | 5 | 5 | 20 |
| 25 | Մինալլի | 7 | 35 | 1 | — | 1 | — | 2 |
| 26 | Մանդիլէր | 9 | 50 | 1 | — | 2 | — | 3 |
| 27 | Միմէրա | 20 | 150 | 2 | — | — | 1 | 3 |
| 28 | Նոխաժանա | 13 | 120 | 6 | 1 | 2 | — | 9 |
| 29 | Պարիան | 22 | 180 | 7 | 2 | 2 | 3 | 14 |
| 30 | Տիվրանոչ | 5 | 35 | 1 | — | — | — | 1 |
| 31 | Ձիգաքա | 33 | 125 | 2 | — | — | — | 2 |
| 32 | Լագանա | 25 | 270 | 1 | — | — | — | 1 |
| 33 | Ագրոյ | 40 | 370 | 3 | — | — | — | 3 |
| 34 | Օլասա | 8 | 50 | 5 | — | 1 | — | 6 |
| 35 | Մահմադ | 8 | 55 | — | 6 | — | 1 | 7 |
| 36 | Իլէ | 20 | 190 | — | 1 | — | — | 1 |
| 37 | Սիսէրա | 2 | 15 | 3 | — | — | — | 3 |
| 38 | Ագրիտ | 15 | 150 | 13 | 3 | — | — | 16 |
| 39 | Արգալիա | 7 | 35 | — | — | — | 3 | 3 |
| 40 | Կիլաթ | 7 | 50 | 1 | — | — | — | 1 |
| 41 | Մալա | 50 | 300 | 2 | — | — | — | 2 |
| 42 | Կապարոն | 25 | 250 | — | — | — | — | — |
| 43 | Ջագուրգիա | 30 | 250 | — | — | — | — | — |
| 44 | Կապան | 20 | 200 | — | — | — | — | — |
| 45 | Օիֆրիկա | 18 | 150 | — | — | — | — | — |
| 46 | Սաթարիս | 10 | 130 | — | — | — | — | — |
| 47 | Այլևայլ տեղացիներ | — | — | 14 | 9 | 14 | 9 | 46 |
| | | 2295 | 16343 | 238 | 104 | 99 | 65 | 506 |

## ՄԵՐՁԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲԱԶՄԱԿՆՈՒԹԻՒՆ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ամսիս 16-ին պ. Ստեփան Կանայեանցը կարդաց վերոյիշեալ վերնագրով մի դասախօսութիւն Հայոց Ազգագրական Ընկերութեան աշխատակիցների ժողովում։ Սկսելով մեր ժամանակի մերձաւոր ամուսնութեան դէպքերից և ցոյց տալով, որ նման երևոյթներ տեղի են ունեցել և անցեալ դարերում, թէ հասարակ ժողովրդի և թէ մանաւանդ իշխանական (Հեթումեանց և Պապեռոնի տէրերի) Ռուբինեան հարստութեան և Լամբրոնի ու Պահլաւունի հայրապետական տան անդամների միջև, յատկապէս կանգ առաւ Դ. դարու վրայ։

Նա հակառակ հռչակաւոր պատմագէտ Ա. Գութշմիդի, որ մեզանում յայտնի է իւր Ագաթանգեղոսի և Խորենացու մասին գրած քաջահմուտ քննադատութեամբ, և Մաղաքիա Օրմանեանի՝ պնդում է, որ ճիշտ է Փ. Բուզանդի ասածը, թէ Տիրան Բ. Արշակունին իւր դ ու ս տ ր ը կին տալով Յուսիկ կաթողիկոսին, իւր քոյրերը առել է Յուսիկի որդի Պապին և Աթանագինէսին, այն է՝ իւր թ ո ռ ն ե ր ի ն, ցոյց տալով միաժամանակ և այլ այսպիսի օրինակ, որով Վասակ Մամիկոնեանը իւր դուստրը տալիս է Տաճատ Ռշտունուն և քոյրը՝ Համազասպուհին Գարեգինին, որ միայն Տաճատի որդին կարող էր լինել։ Այս տեսակ ամուսնական կապերի հնարաւորութիւնը նա հիմնաւորեց բժշկականութեան վրայ։

Այս դասախօսութեամբ հանդէս եկան Դ. դարում զարմանալի երևոյթներ. օրինակ՝ Վահան Ուրացողը, Սամուէլի հայրը, Մեհրուժանի քեռայրն է, այսինքն սորա քրոջ՝ Տաճատուհու մարդը, երկուսով էլ քենակալ են առնելով Շապուհի Որմզդուխտ կոչուած երկու քոյրը և միաժամանակ Վահանի քոյրը Մեհրուժանի մայրն է, այսինքն Վահանը Մեհրուժանի քեռին էր, Մեհրուժանն էլ Վահանի որդու՝ Սամուէլի քեռին և այլն։

Անցնելով բազմակնութեան, սկսելով մեր ժամանակի երկկնութեան դէպքերից ու ցոյց տալով գոյութիւնը և այլ դարերում, Դ. դարու համար Փ. Բուզանդի վկայութեամբ և մանաւանդ մ ա ր դ ա հ ա ռ ու թ ե ա ն գոյութեամբ, պնդում էր, որ եթէ ոչ ժողովուրդը, անտարակոյս նախարարները, բդեշխները և հայ Արշակունի արքաները մինչև Հայաստանի բաժանումը եղել են բ ա զ մ ա կ ի ն։

Պ. Ս. Կանայեանցը իւր այս երկու մերձամուսնութեան և բազմակնութեան թեզիսներով բացատրում է Փ. Բուզանդի և Մ. Խորենացու «կարծուած» հակասութիւնները, որի վրայ ցարդ շատ շատերն են աշխատել, սկզբում փ ն ո վ ե լ ո վ Բուզանդն իբրև վէպ, յետոյ էլ Խորենացուն իբրև յետագայ և գիտունաւոր պատմութիւն. բայց գրական ելքի չէին հասել, ինչպէս Գարագաշը և այլք։

Կային և այլ հետաքրքրական մանրամասներ և խնդիրներ, որոնցից յիշատակելու է այն, որ նա պնդելով պնդում էր, որ Դ. դարում հայ նուիրապետութիւնն եւ այժմեան քահանայութեան պէս ամուսնացած է եղել, և քիչ էր մնում, որ մեզ համոզէր, թէ նոյն իսկ բազմակին է եղել։

Հասկանալի է ուրեմն, որ դասախօսութիւնը մեծ հետաքրքրութիւն շարժեց և միայն ցաւել կարելի է, որ ժամանակի սղութեան պատճառով միմիայն մտքերի թեթև փոխանակութիւն տեղի ունեցաւ։

Ս. Կանայեանցին յատկապէս գրգել է այս խնդրին իւր ցարդ չը տպագրուած մեր մի նոր ժողովրդական «Բաջանց տուն», այն է՝ Արշակունեաց հարստութեան վէպի դիւցազների նման ամուսնական կապակցութիւնները, ուստի և յաճախ համեմատում էր ժողովրդական «Բաջանց» վէպի և Դ. դարու հայ նախարարական, հայրապետական ու արքայական տների մերձաւոր ամուսնական և բազմակնութեան դէպքեր։

«Բաջանց տուն» վէպը Ս. Կանայեանցի երկար ու ձիգ տա-

բինների մի եղկ է, որ ամբողջապէս նորութիւն է մեր գրականութեան համար, ինչպէս վկայել են «Հրատարակչական Ընկերութեան» քննադատները և որ ընդունուած է եղել Լազարեան ճեմարանի կողմից: Դժբախտաբար մինչև այժմ այդ հետաքրքրական աշխատութիւնը մնում է անտիպ, որ ոչ միայն ապացուցանում է թէ հայերս Բաշխանց տան կամ Սասմայ ծռերի հետ միաժամանակ ունենք և մի այլ վէպ, որ նա կոչում է Հայոց Շահնամէ, այլ և նոր լոյս է սփռելու մեր թէ ազգագրական և թէ պատմական շատ մութ մնացած խնդիրների վրայ:

## ՆԿԱՐԻՉ Վ. ՍՈՒՐԷՆԵԱՆԻ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

### ԿԼԱՍԻԿ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԻ ԱՆԿՄԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ:

*Մայիսի 12-ին, Երաժշտական դպրոցի դահլիճում տեղի ունեցաւ նոր կազմակերպուած Հայ Արուեստագէտների Միութեան առաջին դասախօսութիւնը: Յիշեալ նիւթի մասին խօսեց անուանի նկարիչ պ. Վ. Սուրէնեանը:*

*Դասախօսը համեմատաբար բաւական երկար կանգ առաւ ինչ է գեղեցիկը խնդրի վրայ, և ապա անցաւ դասական գեղարուեստի, մանաւանդ վերջին շրջանի և քրիստոնէութեան սկզբնաւորութեան ժամանակի գեղարուեստների առանձնայատկութեանց նկարագրին:*

*Այնուհետև աւելի երկար կանգ առաւ արևելեան և արևմտեան եկեղեցիների ու պետութիւնների (Հռոմի, Բիւզանդիա) մէջ գոյութիւն ունեցող գեղարուեստների առանձնայատկութիւնների վրայ:*

*Այս բնութագրութիւնների մէջ ճշմարիտ բաներ շատ առուեցին, սակայն պէտք է խոստովանուել, որ այդ նկարագիրները չունէին հարկաւոր պարզութիւն, պատկերաւորութիւն և կենդանութիւն:*

*Ամբողջ դասախօսութեան ընթացքում պ. դասախօսը կանգ չառաւ իր դրած հարցի—անկման պատճառների լուսաբանութեան վրայ: Նկարագրեց մինչև վերածնութեան դարի գեղարուեստը, սակաւ ինչ եւ խօսելով հայկական գեղարուեստի մասին՝ փակեց իր մօտ ժամուկէս տևող դասախօսութիւնը:*

X.

## Ի ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ

*Կովկասեան ռազմաբեմի գլխաւոր լիազօր գեն.-մայոր Վ. Մ. Թամամշեանը տեղեկացնում է Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհրդին, թէ Կովկասեան բանակի հրամանատարը թոյլատրել է փախստականներին վերադառնալ Կովկասի բոլոր տեղերը՝ բացի Վերին և Ներքին Սարիղամիշ և Համամլու գիւղերը:*

## ԳԱՒԱՌ

### ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՀԱՅ ԳԻՒՂԵՐԸ

### ԱՌԱՋ ԵՒ ԱՅԺՄ

I

*Եթէ քաղաքացին շնորհիւ ուսման թռիչքներ է կատարել գիւղացու նկատմամբ, այդ նոյն ուսումը իր ամենակարող ուժով առաջ կը մղէ և գիւղացուն: Մարդս անընդունակ չէ ծնուել, նա բնականից օժտուած է ընդունակութիւններով, բայց մեռնում են մարդու մէջ ընդունակութիւնները, երբ նրանք անգործութեան են մատնուած և քնած դրութեան մէջ են պահւում: Եւ այդ բոլորը ուսման պակասութիւնից է:*

*Բայց այդպէս չեն եւրոպական միւս լուսաւոր ազգերի գիւղացիները շնորհիւ պարտադիր ուսման: Մենք, մեր կարճ կեանքի ընթացքում ձեռք բերած փորձառութիւնով, մեր հաւաքած տեղեկութիւններով կարող ենք պնդել, որ գիւղը ներկայումս այն չէ, ինչ որ էր 5-10 տարի առաջ: Մեր ասելիքը վերաբերում է Զանգեզուրի շրջանի հայ գիւղացութեան շուրջը, որի համարեա բոլոր գիւղերը լաւ ճանաչում ենք:*

*Այսպէս, մինչև հայ-թրքական կոտորածները մեր գիւղը մեռած դրութեան մէջ էր, կտրուած էր, բառիս բուն իմաստով, աշխարհից, չունէր ոչ մի հասկացողութիւն դրսի աշխարհից, նոյն իսկ շատ դէպքերում հարևան գիւղերի մասին: Եւ գիւղացու համոզմունքն էր, որ բացի իր վար ու ցանքսից ուրիշ ոչ մի բան չը պիտի գիտենայ:*

*Գիւղացին սրբապղծութիւն էր համարում երեխայ, մանաւանդ աղջիկ ուսման տալը:*

*Եւ գիւղացին դէպի ուսումը այդպիսի կարծիք ունենալով միշտ մնում էր աղէտ: Այդ 10 տարի առաջ էր, երբ հատուկէնտ գիւղերում լոյս ընկնող բանգէտներ ուսման անհրաժեշտութիւնը քարոզելիս քարկոծւում էին իբրև «այլասերողներ»: Բայց հայ-թրքական կոտորածներով, երբ հայ մտաւորականը գիւղը իր սրտին մօտ է համարում ու խմբերով դիմում այդտեղ ու պրոպագանդ մղում խ ա ւ ա ր ի դէմ, հայ գիւղացին արմատից փոխւում է: Նա իր սեփական աչքով տեսնում է ճարտարախօս ինտելիգենտին, որոնք կազմութեամբ իրենից չեն տարբերւում, բայց խօսում են, գեղեցիկ մտքեր են քարոզում և այլն, իսկ ինքը ապուշ կտրած խօսք անգամ չի կարողանում արտասանել: Գիւղացին բանգէտներին համեմատելով իր որդիների հետ տեսնում է, որ ինքը և իր որդիքը թաւալւում են տգիտութեան մէջ:*

*Ու յանկարծ գիւղացութեան մէջ զարթնում է դպրոցներ ունենալու կարիքը: Դպրոցները բացուելով գիւղացութիւնը սկսում է առաջ գնալ: Կարճ ժամանակում դպրոցների ցանցը տարածւում է համարեա ամեն գիւղ ու բոլորը սիրով դպրոց են վազում տեղաւորելու իրենց որդոց ասելով—«վարժապետ, քէ մատաղ, մեր բրախէն էլ վեր կալ, թէ չէ կը մնայ քուչումը, խեղճ ա, թող մի ճոթ հացի տէր դառնայ»: Ու սկսում է դպրոցական եռանդ կեանքը: Եւ մատաղ սերունդը սկսում է կրթուել: Բայց դպրոցը միայն մատաղ սերունդը չի կրթում, այլ և հասակաւորներին:*

II

*Գիւղը մինչև դպրոց ունենալը կարծում ու նոյն իսկ համոզուած էր, որ աշխարհի մի ծնգից մինչև միւս ծունդը (ծայրից ծայրը) տեղեկութիւն չի կարելի ստանալ: Նա կարծում էր, որ հողը բացի նահապետական արօրից ուրիշ ոչ մի բանով չի կարելի հերկել և այլն: Նա կարծում էր, որ աշխարհում ապրող ամբողջ մարդկութեան հոգսը միայն և միայն հացն է և հագապարծութիւնը:*

*Բայց դպրոցների բացուելով երբ հայ ուսուցիչները գիւղ են գալիս ու դասերից դուրս ժողովներ կազմակերպում, դասախօսութիւններ կարդում զանազան հարցերի շուրջը, գիւղը կենդանութիւն է ստանում: Նրանք զարմանում են երբ ուսուցիչը պատմում կարդում է, թէ «այսինչ օրը Բագուի երկար ու լայն փողոցներից մէկում սպանեցին մի բանուոր, կամ, այսինչ գիւղում մի խանութ կրակեցին, Թիֆլիսից Պետերբուրգ մեկնեց Մանթաշեանը եւն, եւն»*

*—Աղա Թումաս, էտ վարժապետը գիրք ա կարդում բոլոր:*

*—Բու տունը շինուի, բա սուտ ա.*

*—Սուտ չի ինչ ա. ում դարդ ա կարել վեր կենայ գլուխ ցուցանի դրանք գրի:*

*—Չէ, Դուքի ապէր, ճիշտ է այս բոլորը, ասում է ուսու-*

ցիչը։ Սա լրագիր է—կազէթ, ամեն տեղ մարդ ունի, ինչ տեսնում, լսում են, գրում են ու էս թղթի մէջ տպում, մենք էլ կարդում իմանում ենք։

Դէ հիմի լուր մի ուրիշը կարդամ։

—Այսօր, ամսիս 14-ին Ղափանի շրջանի Ծաւ գիւղի վրայ աւազակները յարձակուեցին ու գողացան երկու եզ և մի ջորի...

—Վա՜հ, քու տունը քանդուի ոչ, Սաքի, էս հօ մեր Ծաւիցն ա գրած. էս ո՞վ ա գիտացել որ գիրալ ա։ Ես իմ հոգին դրա գրողը սուրբ ա սուրբ. թա չէ հունց կը գիտար։

—Բա՜, Գուքի ապէր, որ ասում եմ ուսումը լաւ բան ա, չես հաւատում։ Եթէ ձեր որդիքն էլ ուսում առնեն, այսպիսի բաներ կը գրեն, լրագիր կը կարդան, գիրք կը կարդան և ամեն ինչ կիմանան։

—Էյ հասարակ (հասարակութիւն), ես չուրաւ հիմի գիտում չի ինչ պենա կարդալը, հըմա հիմի տեսնում եմ լաւ պեն ա. լոխը էլ էգուց ինչու (որչափ) խօխա ունինք դըկէք չկօլ կարդայ։ Ես առի էգուց իմ երկու թա չորս տրեկան խօխաս էլ եմ ղրկելու, որ լափ պուճուրուց մարդ դառնայ ու կազէթ, գիրք կարդայ։

—Հա՛, հա, Գուքի ապէր, կանչում են ամեն կողմից։

Այդ չէ դեռ։ Գիւղացիները աւելի են սիրահարւում ուսման, երբ տեսնում են, որ իրենցից անհամեմատ փոքրը, իրենց երեխէն տան մի անկիւնում նստած, գիրքը ձեռքն առած անընդհատ «ա-սա, սաս. ա-րա, արա» է կարդում։

Եւ այդպէս պատճառ պատճառի վրայ աւելանալով գիւղացիները աւելի ևս ամուր կապերով կապւում են դպրոցին ու զարկ տալիս նրա ծաղկմանը։

III

Երբ սկսուեց ներկայ ահռելի պատերազմը, գիւղն աւելի ևս արթնացաւ, նրա մտահայեցողութիւնն աւելի պարզուեց ու նա ևս սկսեց իր կարծիքը, իր դատողութիւնները յայտնել պատերազմի նկատմամբ։

Պատերազմի սկզբում նա չէր կարող ունենալ այն համոզմունքն ու գիտակցութիւնը, թէ պատերազմը որոշում է հայրենիքի բաղդը, թէ պատերազմը որոշելու է ազգերի լինել չը լինելը և վերջապէս թէ ներկայ պատերազմն է, որ պէտք է վերջ տայ հայ դժբաղդ ազգի վերջնական կոտորածներին... Նրան հետաքրքրող հարցը իր սիրասուն զաւակներն էին, որոնցից ամեն րոպէ տեղեկութիւն էր սպասում։

Եւ յանկարծ գիւղացին ուշքի է գալիս։ Նա պարզ տեսնում է, որ այս պատերազմը սովորականներից չէ, որ այստեղ որոշուելու են մանր ազգերի բաղդը։ Եւ նա ուշի ուշով սկսում է հետեւել պատերազմի ընթացքին, սկսում է լրագիր ս տ ա ն ա լ։

Մարդ հրճւում է երբ գիւղերի փողոցներով անցնելիս տեսնում է այս ու այն փողոցում կամ կտրի վրայ մարդիկ շըրջապատած մէկին, որը կարդալ գիտէ, ուշադրութեամբ լսում են, նրա շրթներից դուրս թռած իւրաքանչիւր բառը ագահութեամբ կլանելով։

Վերջանում է ընթերցանութիւնը և այս ու այն կողմից հարցերի տարափ են թափում ընթերցողի գլխին, թէ ինչու այս այսպէս եղաւ, այն այնպէս...

Վերջացնելով այդ բոլորը սկսում են պատերազմող կողմերը քննադատել։

Քննադատութիւններին ուշի ուշով հետեւողը հիացմունքով նկատում է, թէ գիւղական իրականութեան մէջ սնուած ու ծնուած այդ պարզ սրտերը ո՜րպիսի մտքեր են յայտնում և ո՜րպէս փիլիսոփայում պատերազմի սկզբնաւորութեան, ընթացքի ու վերջաւորութեան մասին։ Նա պարզ տեսնում է դպրոցի գործած մեծ ազդեցութիւնը գիւղացու մտաւոր աշխարհի վրայ։

Բայց պատերազմը իր խորունկ ազդեցութիւնն է գործել ժողովրդի վրայ և այլ կողմից։

IV

Պատերազմի աւերիչ ազդեցութիւնը աւելի նկատելի է դառնում գիւղում և այն էլ maxsimal չափերով։ Գիւղը զրկուելով աշխատող ձեռքերից կանգ է առնում և վ ս տ ա կ ը, վրայ է հասնում ահռելի թանգութիւնը, որով տնտեսապէս քայքայւում է։

Պետութեան օգնութիւնը, անհատական նպաստները և զանազան բարեգործութիւնները չեն կարող այն օգնութիւնը հասցնել գիւղացուն, որքան հաւաքական աշխատանքը-համագործակցութիւնը (կօօպերացիան)։

Այստեղ է ահա, որ երևան է գալիս գիւղացին իր հասունութեամբ, ի ցոյց է հանում իր կատարած թռիչքները մի քանի տարիների ընթացքում։

Զօրահաւաքից (մօբիլիզացիա) յետոյ, երբ գիւղը զրկւում է աշխատող ձեռքերից, գիւղում ծնողները միութիւններ են կազմակերպում ու միացած ուժերով օգնութեան հասնում անօգնական ընտանիքներին և վարում դաշտային աշխատանքները։ Այդպիսով հիմք են դնում մեր գիւղերում հաւաքական աշխատանքի սկզբունքը։

Թանգութեան առաջն առնելու համար կազմւում են յատուկ մարմիններ՝ դրամ հաւաքելու ու նպաստներ ձեռք բերելու, որպէսզի ապրանք ներմուծեն ու ընչազուրկ հայրենակիցներին ազատեն շահագործութիւններից։

Եւ առաջ, ամեն մի գիտակից անձն գիւղ մտնելուց դժախքութիւն էր զգում իրեն, այսօր ամեն ինչ բարելաւ վիճակում է տեսնում։ Նա ունի այնտեղ ընկեր, խորհող, գործող և այլն։

Ահա գիւղը մտաւորապէս այժմ։ Եւ նա յառաջադիմել է դըպրոցների հետ։

Միանանք և մենք, քաղաքների կեանքով ապրողներս, ու ընդառաջ գնանք զարկ տալու գիւղի յառաջադիմութեանը։ Իմանանք, որ դժուարութիւնները հարթուած են արդէն։ Եւ գիւղը «կոյր» չէ...

Ղափան, 24 ապրիլի 1916 թ. Գայլոտա

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Թիֆլիսի Քաղաքային Վարկի Ընկերութիւնը նուիրել է յօգուտ Կ. Հ. Բ. Ը.-թեան 1,000 ռ., որից 100 ռ. յօգուտ Ցխինվալի և 100 ռ. Գորուայ ծխ. դպրոցների։

* * *

Ցխինվալի ճիւղը դիմել է Խորհրդին, տալ իշխանուհի Նատալիա Գէորգեան Մաչաբելուն (ծնեալ Երևանցեան) մշտական անդամութեան մրցագիր, որի համար ճիւղը ստացել է 100 ռ.։ Խորհուրդը յարգեց ճիւղի առաջարկութիւնը։

* * *

Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհուրդը, ըստ Գանձակի փոխանորդի դրաւոր միջնորդութեան, որոշեց Գանձակի վիճակի Զարգեալար (Խոյլար) և Խանքենդ (Ղարադաղլու) գիւղերի դպրոցների շինութեան համար յատկացնել միանուագ 200 ռ.։

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳԻՐՆԵՐ

### ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻՆ

### Ջուլֆա-Կովիժենից

Վանից եկած են 60 սայլ։ Շտապեցէք կարգադրել տեղափոխելու երեխաներին Ղարաքիլիսա մարդատար գնացքով, Վարդանեանին, որ Ղարաքիլիսայում և Սալանեանին՝ Դիլիջանում յայտ-

նուած է այդ մասին։ Բացի սպիտակեղէնից, կատարեալ ախտահանութեան համար հարկաւոր է 77 ձեռք հագուստ և ոտնամաման։

* * *

Ախալքալաք—Տաշպարոնեանից։—Սկսել են գնել տանձոցինների համար գիւղատնտեսական գործիքներ և լծկան կենդանիներ։ Խնդրում ենք շտապեցնել դրամական օժանդակութեան փոխադրումը։

* * *

Կարակուրտ—Աւետիսեանից։—Որբերի դրութիւնը կրիտիքական է։ Շուտափոյթ յայտնեցէք՝ որտեղ տեղափոխել 25 երեխայ։ Փոխադրութիւնը կազմակերպելուց յետոյ կը գնամ Քէօփրի-Քէօյ։

* * *

Իգդիր—Մատինեանից։—Ստացուած է վեց վագոն գիւղատնտեսական գործիքներ, մէկ վագոն ալիւր, մէկ վագոն շաքար։ Սպասում ենք կարգադրութեան։

* * *

Կարս—Գաղթականներից։—Կարսում ապրող բոլոր հայ գաղթականները խնդրում են շտապ կարգադրութիւն նրանց դրամական նպաստ և կենսամթերք տալու համար։

Սննդի ծայրայեղ կարիք կայ։



## ՄԵԾ ԻՇԽԱՆՈՒՀՈՒ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԿՈՎ. Հ. Բ. ԸՆԿ. ՀԻՒԱՆԴԱՆՈՑԸ

Ամսոյս 20-ին, ժամը 5-ին, Մեծ Իշխանուհի Անաստասիա Նիկոլաևնան բարեհաճեց այցելել Կ. Հ. Բ. Ընկ. լազարէթը ուղեկցութեամբ Ֆրէյլինա Մ. Ե. Կրուպինսկու, Կարմիր Խաչի ընկերութեան Կովկասի լիազօր գեն. Գոլուբևի, կառավարչական բժիշկ Մուղամովի և կոմս Տիշկևիչի։

Մուտքում Մեծ Իշխանուհուն ընդունեցին Հ. Բ. Ընկ Խորհրդի նախագահ Ս. Ս. Յարութիւնեան, անդամներ՝ իշխանուհի Մ. Թումանեան, տիկ. Հ. Առստամեան, պ.պ. Մ. Քալանթարեան, Խալաթեան և հիւանդանոցի բժիշկ Տիգրանեան։

Մեծ Իշխանուհին բարեհաճեց մեծ ուշադրութեամբ հարցուփորձ անել հիւանդների առողջութեան մասին. խրախուսում էր և ցանկանում էր նրանց առողջութիւն։

Այցելութիւնը տևեց մօտ մի ժամ։

Մեծ Իշխանուհին գոհ մնաց լազարէթից և իր շնորհակալութիւնը յայտնեց Խորհրդին և լազարէթի բժշկական խմբին։

# ՔՐՈՆԻԿՈՆ

Այսօր կիրակի, ամսիս 22-ին, առ. ժամը 11-ին կայանալու է Կովկասի Հայոց Բարեգ. Ընկ. ընդհանուր ժողովը Ընկերութեան ընթերցարանի դահլիճում։

* * *

Յովնանեան դպրոցի հոգաբարձուներ ընտրելու համար Մուղնու եկեղեցում պատուիրակներ ընտրուեցին պ. պ. Յովհ. Թումանեան, Ստ. Լիսիցեան, բժ. Տիգր. Թադէոսեան և Նիկ. Տէր-Ղեւոնդեան։ Վանքի եկեղեցում ընտրուեցին՝ պ. պ. Մ. Մուշայեան և բժ. Ա. Շիխեան։

* * *

Մայիսի 14-ից սկսուեց Անդրկովկասեան կոօպերատորների համագումարը և տևեց երկու օր. համագումարին մասնակցում էին Անդրկովկասում գոյութիւն ունեցող բոլոր կոօպերատիւ հիմնարկութիւնների ներկայացուցիչները։

* * *

Անկախ Թիֆլիսի քաղաքային վարչութեան բացած փռներից, ոստիկանապետի նախաձեռնութեամբ Միքայէլեան փողոցի և կայարանի հրապարակի վրայ բացուած են երկու փուռն, որտեղ հացը վաճառւում է ըստ սակագնի։ Մօտ ապագայում ոստիկանական փռներ կբացուին նաև քաղաքի ուրիշ մասերում։

* * *

Թիֆլիսում հիմնւում է «Պետական հիմնարկութեանց մէջ ծառայողների սպառողական ընկերութիւն», որի կանոնադրութիւնը արդէն ներկայացուած է նահանգապետին ի հաստատութիւն։

* * *

Երկրագործական դեպարտամենտը յունիսի սկզբին շերամապահական կայարանին կից հոգևորականների համար կազմակերպում է մեղուապահական դասընթացքներ ամիս ու կէս ժամանակով։ Դասընթացքներ հիմնւում են 100 մարդու համար, որոնք գործնականապէս զբաղուելու են կայարանի մեղուանոցում։

* * *

Ամսիս 16-ին թիւրք կանանց և տղամարդկանց Բարեգործական Ընկերութիւնների նախաձեռնութեամբ կայացաւ տուփերով հանգանակութիւն յօգուտ պատերազմից վնասուած մահմեդականների։ Արդիւնքը բաւարար էր։

* * *

Օլգինեան մանկաբարձարանն այս տարի աւարտեցին մանկաբարձուհու կոչումով 55 հոգի։

* * *

Շուտով կազմուելու է Կ. Հ. Բ. Ը.—կենտրոնական գրադարանի նոր յաւելուած գրացուցակ ստացուած մի քանի հազար գրքերի։

* * *

Մայիսի վերջերին Թիֆլիսում կը կայանայ նահանգի ժողովրդական դպրոցների ուսուցիչների համագումարը։

* * *

Վանի նախկին «Աշխատանք» թերթը սկսել է հրատարակուել Երևանում մի խումբ երիտասարդ գրագէտների ձեռքով։

* * *

Բարձրագոյն հրամանով ամսիս 17-ին սկսուեց ցուցակագրութիւն Թիֆլիսի հիւանդանոցների մահճակալների։

* * *

Այս շաբաթ Թիֆլիսում եղանակը անձրևային էր։ Մի քանի անգամ ևս տեղաց կարկուտ։ Յորդ անձրևների պատճառով Բուռ գետը դուրս եկաւ ափերից և ողողեց 19-ն փետրուարի փողոցը։ Բաւականին խանգարուեց և ելէքտրաքարշի երթևեկութիւնը։

* * *

Կ. Հ. Բ. Ընկ. ցանկանալով դիւրացնել ճիւղերի հետ ունեցած հեռագրական հաղորդակցութիւնը, դիմել է հեռագրատան կառավարչին և շրջաբերականով հաղորդել ճիւղերին, որ այսուհետև Ընկերութեան և Կենտր. Կոմիտէի անունով ուղղուած հեռագրերը հասցէագրեն կրճատ ձևով՝ «Кабо» վերտառութեամբ, որը կազմում է Ընկ. հասցէի սկզբնատառերը։

# Գեղարուեստ

## ՆԿԱՐԻՉ Մ. ՄԻՀԱՆԱՋԵԱՆ

(А. Миганаджіанъ, *հեղինակութիւն* Н. Лаврскій-*ի*, Москва *գինը 1 ռ. 25 կ.*)

—

*Հայազգի երիտասարդ նկարիչ Ա. Միհանաջեանի մասին Լաւրսկին մի գրքոյկ է հրատարակել, որից նկարչի մասին հետեւեալ տեղեկութիւններն ենք քաղում.*

*Միհանաջեանը ծնուել է Բախմուտում 1883 թուին. ծնողները շատ շուտով փոխադրւում են Նոր-Նախիջեւան։ Երեխայ ժամանակ հօր հետ միասին եղել է Անդրկովկասում և Պարսկաստանում (Թեհրան)։ Վարոնեժում ծառայել է մի գրասենեակում, բայց վերջը իր հոգու իսկական թելադրանքներին լսելով՝ անցել է նկարչութեան։ Թէև նա միայն հինգ տարի է որ նկարում է, բայց արդէն ուշադրութեան առարկայ է դարձել։*

*Հեղինակը տալիս է այնուհետև Միհանաջեանի նկարչական բնութագիրը։*

*Հենց փոքրուց Միհ. երազող տիպ է եղել. Նրա նկարների մէջ երեւակայութիւնը, նորանոր ձեւերի խմբակցութիւնը, իրականից դուրս պատկերացումներ ստեղծելու ձգտումն առաջին դեր է խաղում։*

*Միհանաջեանի նկարների մեծամասնութեան նիւթն է հանգիստը և վայելքը։ Նա վերցնում է արեւելեան հեքեաթներից և պատմութիւններից նիւթեր, բայց նրանց ուրոյն գոյն է տալիս և իր հոգու ցանկութիւնները այդ միջոցով արտայայտում։ Նա չի արտանկարում հաւատարմութեամբ նիւթերը, իրական Արեւելքը, այլ նա երազում է Արեւելքի համար։ Միհանաջեանի վրայ ազդել է հին Պարսկական գեղարուեստը։ Սրա նկարների մէջ, Պարսկաստանի պէս, գլխաւոր խնդիրն է գծերի և գոյների ներդաշնակ փոխ-յարաբերութիւնը։*

*Գծեր նուրբ ռիթմով իրար են հագնւում և իրարից բաժանւում, գոյները նոյնպէս։ Նկարի մէջ եղողանները, ծառերը, մարդիկ, իրերը իրար լրացնելով դառնում է մի ներդաշնակ օռնամենտ։ Շարժումը և ծաւալը—տարածականութիւնը նրա հոգուն օտար են։ Նրա պարող կանայք շարժման մէջ չեն, այլ շրջապատի ամբողջականութիւնը լրացնող ձեւեր են։ Մարդն ու հոգեկան կեանքը չի հետաքրքրում նկարչին։*

*Ըստ հեղինակի՝ Միհանաջեանը արեւելեան ոգու նկարիչ է և որպէս զի նա նիւթ ունենայ նորանոր ստեղծագործութիւնների, պէտք է Արեւելք գնայ նոր տպաւորութիւններ ստանալու համար։ Հեղինակը Միհանաջեանի մէջ նոյն իսկ գտնում է հայկական հին կուլտուրայի առանձնայատկութեան ոգու արձագանգները։*

*Հեղինակի խորհուրդը ճիշտ է. Միհանաջեանը ոչ միայն Պարսկական և Հնդկական, այլ Հայկական հին գեղարուեստը և ներկայ կեանքը, բնութիւնը պէտք է ուսումնասիրէ։ Անկասկած այս նոր գրգիռները նրա հոգուն և ստեղծագործութեանը նոր թափ կտան։*

*Գրքի մէջ կայ Միհանաջեանի վեց նկարի արտանկարները, երկուսը գունաւոր։ Միհ. անպայման ընդունակ նկարիչ է և ապագայ է խոստանում։*

*Գ. Էդ.*

# Գիտութիւն

## ՀԱՅԵՐԷՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ *)

—

*Յաճախ մեր երաժիշտները դիմել են ինձ՝ բացատրելու իրենց, թէ ինչ կանոններով են յօրինւում մեր ոտանաւորները, և նրանք միշտ գանգատուել են, թէ մի հայերէն ոտանաւորի եղանակ դնելու ժամանակ՝ մեծ դժուարութեան են հանդիպում՝ եղանակի և լեզուի շեշտերն իրար բռնացնելու համար, և եթէ ոտանաւորի առաջին տան մէջ լեզուի և եղանակի շեշտերը յարմարւում են, յաջորդ տների մէջ արդէն, երբ նոյն եղանակով երգւում են, այդ երկուսի շեշտերն այլ եւս չեն բռնում իրար. որովհետև մինչ եղանակի շեշտերն անփոփոխ նոյն տեղում են մնում, ոտանաւորի մէջ շեշտերը առանց որեւէ կանոնի փոփոխւում են։ Եւ հետեւանքը լինում է այն, որ ոտանաւորի մէջ շեշտուած վանկերը յաճախ ընկնում են եղանակի թոյլ տակտամասերի հետ, ընդհակառակն՝ ոտանաւորի անշեշտ վանկերը, եղանակի զօրեղ տակտամասերի հետ.—մի բան, որը թոյլատրելի չէ նոր երաժշտութեան մէջ։*

*Ի՞նչ կարելի էր խորհուրդ տալ մեր երաժիշտներին, քանի որ մեր յայտնի բանաստեղծներն անգամ անկատար ոտանաւորներ են յօրինում։ Եւ աւելին եւս, մեր բանաստեղծները մեծ մասամբ նոյն իսկ կարեւոր չեն համարում ոտանաւոր յօրինելու արուեստն ուսումնասիրել և յօրինելիս այդ արուեստին հետեւել։ Բայց յաճախ գրականութեամբ պարապող երիտասարդներ եւս դիմել են ինձ ցոյց տալու մի երկու գիրք, որի մէջ մանրամասն պարզաբանուած լինէր մեր տաղաչափութիւնը. ես էլ այդ դէպքում դժուարութեան եմ հանդիպել. որովհետև ուրիշ բան չեմ կարողացել յանձնարարել նրանց, բացի մի երկու պատահական յօդուածից և Ա. Այտնեանի քերականութիւնից ու Յ. Ճաղարբէկեանի Բանահիւսութեան տեսութիւնից՝ իսկապէս միայն առաջինը, որովհետև երկրորդի հեղինակը առաջինի տեսութեանն է հետեւում ամբողջապէս։ Եւ իմ կարծիքով, եթէ մեր բանաստեղծները նոյն իսկ Ա. Այտնեանի տուած կանոնները պահէին, բաւական կանոնաւոր և երաժշտական ոտանաւորներ կը յօրինէին, որովհետև ինչքան էլ Այտնեանի բացատրութիւնները հնացած ու թերի են, բայց և այնպէս անփոփոխ են մեր սովորական տաղաչափական արուեստի էական մասը։*

*«Համբաւաբերի» խմբագրութիւնից դիմում ստանալով տաղաչափութեան մասին մի յօդուած գրելու շաբաթաթերթի համար, պէտք է ասեմ, որ մեր տաղաչափութիւնը, գրականութեան հնութեան պատճառով, այնքան բարդ և բազմազան է, որ երեք չորս համարում դժուար է ամփոփել այն ամենը, ինչ որ կարեւոր կը համարէի, որ մեր բանաստեղծները նկատի ունենային։* [1]

*) *«Համբաւաբերի» խմբագրութիւնն ստանալով ամեն կողմից բազմաթիւ ոտանաւորներ, յիշեց անմահ Գէօթէի խօսքը, թէ ոչ որ չուզեց կօշկակար դառնալ, բոլոր կօշկակարները բանաստեղծ դարձան։ Միաժամանակ դիտելով, որ այդ սկսնակներից շատ շատերը բանաստեղծական շնորհ են ցոյց տալիս, բայց անտեղեակ են հայերէնի ոգուն ու տաղաչափութեան, և երբեմն ցուցմունքներ են ուզում, մենք դիմեցինք մեր աշխատակից պ. Մ. Աբեղեանին յատուկ առաջարկով Հայոց տաղաչափութեան էական հիմունքները պարզաբանելու, որից անշուշտ կարող են մեծապէս օգտուել մանաւանդ մեր սկսնակ բանաստեղծները։ Սոյն յանձնարարում ենք այս առթիւ կարդալ և Ստ. Մալխասեանի «Հայերէն տաղաչափութիւն» յօդուածը Հայ գրագէտների „Ձիթենի" գրական ժողովածուի մէջ, որ տպագրուեց անցեալ տարի Թիֆլիսում։ Խմբագրութիւնս միայն ցաւել կարող է, որ պ. Մ. Աբեղեանի Հայերէնի տաղաչափութեան ընդարձակ ուսումնասիրութիւնը ցարդ լոյս չը տեսաւ։ Հրաւիրում ենք այս առթիւ մեր «Հրատարակչական Ընկերութեան» և հայ մեկենասների ուշադրութիւնը, մանաւանդ որ այդ գրքի տպագրութեան ծախքը շատ չէ լինելու։*

*Խմբ.*

[1] *Տարիներ առաջ ես մեր տաղաչափութեան մասին դասաւանդել եմ Էջմիածնի Գ. Ճեմարանի Ա. լսարանում և վաղուց այդ մասին պատրաստ ունեմ*

## ՑՈՒՑԱԿ ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԵԱՆՑ

Մուշու Հայ Տիկինների Յանձնախումբը, որը սկսել է իր գործունէութիւնը 1915 թ. սեպտեմբեր ամսից հաւաքելով ամսավճարներ օրիորդներից և կանանցից, ուղարկել է Կ. Հ. Բ. Ը-թեան միջոցով հայ գաղթականներին սեպտ., հոկտ. և նոյեմբ. ամիսների ամսավճարները՝ օր. Ս. Մարտիրոսեան, տիկ. Մ. Յովսէփեան, տ. Վ. Գուրգէնեան—5-ական ռ.=45 ռ., տ. Ե. Մալխասեան 3-ական=9 ռ., օր. օր. պ. Գ. Փ. Մշեցեանները 2-ական ռ.=6 ռ., Ա. Զինուորեան, Զ. Մակարեան, Գ. Միսկինեան, Մ. Կիւրեղեան, Ս. Մալխասեան, Ի. Մինասեան 2-ական ռ.=42 ռ., օր. Տ. Տէրտէրեան, օր. Գ. Կոթպաղեան, օր. Վ. Խալիպեան, օր. Բ. Գասպարեան, Վ. Յակոբեան, տ. տ. Ա. Առաքելեան, Ա. Զօրեան, Զ. Յակոբջանեան, Մ. Ճամկէօզեան, Հ. Թոռլաքեան, Ա. Մուրադեան, Ն. Գրիգորեան, Լ. Վէհրիկեան, Ա. Գատինեան, Ա. Գահվէճեան, Մ. Յարութիւնեան, Վ. Այվազեան, Ի. Վահինեան, Հ. Մոմճեան, Ն. Եպզօրեան, Ե. Նունիկով, 1-ական ռ.=63 ռ., օր. Ա. Վէհրիկեան, Ա. Մինասեան, Ե. Գասպարեան, Հ. Վանեցեան, Թ. Տէրտէրեան, Ս. Մալխասեան, Ս. Խաչատրեան, Ն. Ճէմէճեան, Հ. Խաչատրեան, Գ. Գասպարեան, Ա. Պէրպէրեան, Փ. Մարկոսեան—50-ական կոպէկ=18 ռ., տ. Թ. Երեմեան սեպտ. 5. ռ. հոկտ. նոյ. 3-ական=11 ռ., Վ. Երեմեան սեպ. 1 ռ. հոկտ. 2 ռ. նոյ. 1 ռ.=4 ռ. Մ. Իւանովնա սեպտ. 1 ռ., Ս. Մալխասեան սեպտ. 50 կ., Ի. Երեմեան սեպտ. 1 ռ., Հ. Յակոսեան սեպտ. և հոկտ. 2, Վ. Կակոսեան սեպտ. 1 ռ. նոյ. 50 կ.=1 ռ. 50 կ., Ա. Թերզեան սեպտ. հոկտ. 2 ռ., Վ. Արսլանեան սեպտ. 25 կ., Մ. Մարգարեանց սեպտ. 2 ռ., Նուէր Զուարթ Մինասեանից 1. ռ., Նուէր Աշաքեան և Բագանճեան 20 կ., Նուէր Վ. Մինասեանի տանը հաւաքուած հիւրերից 15 ր. 10 կ., Նուէր Տ. Մարտիրոսեանի տանը հաւաք. հիւրերից 31 ռ., Նուէր Ա. Գուրգէնեանի տանը հաւաք. հեռ. 25 ռ. Ս. Ճամկոչեանից 50 կ. ընդհանուր մուտք սեպտ. հոկտ. ամիսներում=294 ռ. 85 կ., ծախսուած՝ սեպտեմբեր ամսում գնած զգեստեղէններ, կարուած 75 կտոր շապիկ, վարտիկ, 18 զոյգ գուլպայ, 22 չիթէ թաշկինակներ=86 ռ. 71 կ., հոկտ. ամսում նոյնպէս 7 վերմակ, 20 տաք շալ, փուփայկայ, չիթէ գլխի թաշկինակ 18 հատ, երեխաների գուլպաներ 12 հատ=110 ռ. 50 կ., նոյ. ամսուայ գնուած և կարուած զգեստներ 65 կտոր, 6 հատ տաք գուլպայ, 1 փուփայկայ =66 ռ. 83 կ. պիկաների համար վճարուած 2 ռ. 95 կ., ծախսուած =266 99 կ., դրամարկղում մնացած դեկտ. ամսուայ հաշուից 28 ռ. 76 կ.։ Այս իրեղէնները և մօտաւորապէս 80 կտոր հիներ ուղարկուած են բոլորը Թիֆլիսի Բար. Ընկ.—

Նախագահուհի Յանձնախմբի՝ Ի. Մինասեան

Գանձապահուհի՝ Գոհարիկ Մշեցեան

Անդամուհիներ՝ Սաթենիկ Մարտիրոսեան, Վարդուհի Յակոբեան, Վարսենիկ Այվազեան

Մուշի. 1916 թ. յունուար 25։

## ՎՐԻՊԱԿ

Թերթիս № 20-ում Լէօի «Հայ բանաստեղծութիւնը և հայ հայրենիքը» էջ 2-րդ տող 16, «գայրոյթ» պիտի լինի—«ձանձրոյթ», 33 տող. նայելով—հայելով, 38 տող. արժէքներ—անէծքներ, 44 տող. կանչում—կաչում։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

ՀԱՅ ԿԵՆՏ. ԿՈՄԻՏ. սրանով յայտնում է ի գիտութիւն խնդրատուների, որ պահեստների համար հաշուապահների և այլ ծառայողների կազմը արդէն լրացած է, և խնդիրներ այլ ևս չեն ընդունւում։

## ԱՆՅԱՅՏԱՑԱԾ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐ

Մարիամ Վարդանեանը փնտռում է կորած Միհրան Համբարձումեան՝ 9 տարեկան որդուն Լամզկերտից, տեղն իմացողներին խնդրելով յայտնել Բարվանսարա գիւղի (Ղազ. գ.) Մեսրոպ քահ. Էգիլեանցին։

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ

Չերնիգով նահ. Պիլենկօ գիւղից խնդրում են, ով որ և է տեղեկութիւն Մշոյ շրջանի Սահակ գիւղացի Ասատուր և Խաչիկ Ուսուս Յակոբեաններից կամ երեխաներից ազատուածների մասին գիտէ, բարեհաճէ հաղորդել։
Черниг. губ. сел. Пиленко, М. Акопяну. 2—2

1915 թ. դեկտ. Արդահանի և Սարիղամիշի կռուին տաճիկ զօրքից գերի են ընկել Ռուսատան Ծափնայ գիւղացի Ղազար Յովակիմեան և այլք։ Դրանց տեղը իմացողներին խնդրում են յայտնել Ամերիկայի՝ Ակրօն քաղաք, Մուրադեանին, անգլիերէն հետեւեալ հասցէով.
M. Mooradian. 663 S. Main st. Okron Ohio U. S. 2—2

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԱՐՀԵՍՏԱՆՈՑՈՒՄ

Գանովսկայա փող. № 3. ծախւում են երեխաների շորեր մատչելի գներով, որբիչներ, ծրարներ, փոստի թուղթ և այլն։ Ընդունւում են պատուէրներ աթոռների վերանորոգութեան։

**ԹՈՔՐԻՍՏԻ** դէմ մաքառող Կովկասեան Ընկերութեան Սալտակ ծո ղիկի» երթեեկ հիւանդանոցը ընդունում է հիւանդներ ամենայն օր (բացի կիրակի և տօն օրերից) առաւօտեան ժ. 9—11-ը։
ԲԺՇԿՈՒԹԻՒՆԸ ՁՐԻ Է։
Փետրուարի 19-ի փ. № 47՝ Մուխրանեան կամուրջի դիմաց։ 2—10

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած
**կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի**
արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գիւանական գրքեր։
Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։

## ՎԵՀԱՓԱՌՈՒՑ ԹՈՅԼՏՈՒՈՒԹԵԱՄԲ ԿՐՕՆԻ ԴԱՍԱԳՐՔԵՐ
## ՔԱՄԱԼԵԱՆՑ Ս-Ի

ա. տարի—Բարոյախօսական առակներ և Յիսուսի կեանքից պատմուածներ . . . 15 կ.
բ. » Նահապետների կեանք, Աբրահամից մինչև Յովսէփի մահը . . . 20 »
գ. » Առաջնորդների, դատաւորների, թագաւորների կեանք, Մովսէսից մինչև Յերոբովամ . . . . 35 »
դ. » Մարգարէներ—Եղիայից մինչև Յովհաննէս . . . . 40 »
ե. » Յիսուսի կեանքը և գործունէութիւնը մինչև Համբարձում . . . 50 »
զ. » Ձեռնարկ դասատուների համար—ա. տարի 40 »

Դիմել՝ Թիֆլիսի գրավաճառներին կամ հեղինակին՝ Միքայէլեան փողոց № 82. 2—2

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1 Дозволено военнной цензурой.

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Բաշ գիւղի ապաստարանի որբ երեխաների*

*18 ապրիլի 1916 թ.*

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա-վայր | Տարիքը | Ծնող մեկ թէ երկու | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Ափիկեան Սինամ | Խաչլու | 14 | չունի | — | ոչ | |
| 2 | Ասլոյեան Վահան | Թէքթէվերան | 8 | մայր | Բաշ գիւղ | » | Ամուսն. |
| 3 | Աւետիսեան Մարտիրոս | Արով | 8 | » | » | » | |
| 4 | » Ագնիւ | » | 6 | » | » | » | |
| 5 | Բարբարեան Սաթենիկ | Կոփ | 11 | չունի | — | » | |
| 6 | Բարսեղեան Սինամ | Բաշ գիւղ | 12 | » | — | ոչ | |
| 7 | Ըռկոյեան Առաքել | Բոստաքենդ | 11 | հայր | Կովկաս | » | |
| 8 | Թօզօրեան Քիշմիշ | Իւզվերան | 12 | չունի | — | » | |
| 9 | » Սնացական | » | 7 | » | — | » | |
| 10 | Խաչատրեան Հովան | Մոլախանան | 6 | մայր | Բաշ-գիւղ | » | |
| 11 | » Վարդանուշ | » | 8 | » | — | » | |
| 12 | » Հայաստան | Հարոնեբար | 10 | հայր | Վեր. հայր. | » | |
| 13 | » Սաթենիկ | » | 8 | » | » | » | |
| 14 | Կոպալեան Ագնիւ | Խաչլու | 8 | չունի | — | » | |
| 15 | » Եսթեր | » | 3 | » | — | » | |
| 16 | Յարութիւնեան Լեւոն | Խլաթ | 11 | » | — | » | |
| 17 | » Դալուստ | — | 5 | մայր | Բաշ-գիւղ. | » | Ամուսն. |
| 18 | Պէլէյեան Համբարձում | Բաշ գիւղ | 8 | չունի | — | ոչ | |
| 19 | » Սամսոն | » | 7 | » | — | » | |
| 20 | Փինաչեան Խաչատուր | Թոնրաս | — | » | — | » | |

*Էջմիածնի «Եղբայրական Օգնութեան» որբանոցում. 25 փետր. 1916.*

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Ադէ | Կոջոր | 4 | որբ | | ոչ | |
| | | | | | Հայրը կամ. | » | |
| 2 | Արուս | Կոջոր | 7 | հայր-մայր | Մայրը Էջմ. | » | |
| 3 | Ալմաստ | Վան | 7 | որբ | | » | |
| 4 | Ողանի | Հաւէն | 9 | հայր | Հաջիլար | » | |
| 5 | Ագնիւ | Շատախ | 7 | որբ | | » | |
| 6 | Արշալոյս | Բայազիդ | 10 | որբ | | » | |
| 7 | Աննման | Խոտոտ | 6 | հայր | Վերադ. երկիր | » | |
| 8 | Արուսեակ | Արմգոն | 8 | մայր | Էջմիածին | » | |
| 9 | Աստղիկ | Արմգոն | 7 | մայր | » | » | |
| 10 | Ագնիւ | Մանտանա | 11 | որբ | | | Կոյրէ |
| 11 | Աղանիկ | Վան | 10 | որբ | | » | |
| 12 | Անտառուլ (աղջիկ) | Շատախ | 10 | » | | այո | |
| 13 | Ագնիւ | Բանոնա | 10 | » | | ոչ | |
| 14 | Ագնաւօ (աղջիկ) | Իրիջա | 13 | » | | » | |
| 15 | Արամ | Նիգոն | 14 | » | | | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 16 | Անդրանիկ | Ներնա | 12 | » | | » |
| 17 | Ազիզ | Կուչգուց | 13 | » | | » |
| 18 | Ասատուր | Բասականից | 13 | » | | ոչ |
| 19 | Ասատուր | Ոփնազ | 12 | » | | » |
| 20 | Արմենակ | Կոչեր | 12 | » | | » |
| 21 | Ասատուր | Շիտան | 14 | » | | այո |
| 22 | Արամ | Սիրնօ | 11 | մայր | Էջմիածին | ոչ |
| 23 | Անդրանիկ | Կոչեր | 9 | որդ | | » |
| 24 | Ազիզ | Ղարաքէշիշ | 11 | մայր | Օշական | այո |
| 25 | Արուսեակ | Նադրցի | 10 | մայր-հայր | Փարբի Էջմ. | ոչ |
| 26 | Ագապի | Մասուակ | 12 | որդ | | » |
| 27 | Արշալոյս | Մանդանտ | 7 | մայր | Էջմիածին | » |
| 28 | Աղաւնի | Աթանա | 6 | մայր | » | » |
| 29 | Աղասօ | Իրիջա | 13 | որդ | | ոչ |
| 30 | Ասլան | | 3 | | | » |
| 31 | Ալմաստ | Մարմոր | 14 | մայր | Էջմիածին | » |
| 32 | Արուսեակ | Պեչան | 10 | » | Շահրիար | » |
| 33 | Արսէն | » | 8 | » | » | » |
| 34 | Աղաւնիկ | Հանգեղ | 14 | որդ | | » |
| 35 | Աւետիսեան Նուբար | Ջանկ (Մուշ) | 6 | » | | » |
| 36 | Արշակեան Տիգրան | Վաղարշապատ | 7 | մայր | Վաղարշապ-տ | » |
| 37 | Ասատուրեան Յարութիւն | Ուլթոզկա | 10 | որդ | | » |
| 38 | Արսոյեան Գեղամ | Մաջոր | 12 | հայր | Վաղարշապ-տ | այո |
| 39 | Աւետիսեան Պարգև | Վան | 14 | » | » | » |
| 40 | Ազիզեան Եղօ | » | 13 | մայր | » | ոչ |
| 41 | Ամիրխանեան Հմայեակ | Հայոց Ձոր | 10 | » | » | այո |
| 42 | Առաքելեան Գարեգին | Ալճավուսար | 12 | » | » | ոչ |
| 43 | Աւետիսեան Հռիփսիմէ | Վան | 7 | հայր | Թիֆլիս | այո |
| 44 | Աղայեան Մանեակ | Ալաշկերտ | 9 | մայր | Վաղարշապ-տ | ոչ |
| 45 | Աւետիսեան Գարմիլէ | Վան | 6 | հայր | Մարգարա | » |
| 46 | Արամ | Արրնօ | 11 | մայր | Էջմիածին | » |
| 47 | Անման | Խուզամ | 6 | հայր | Վերադ. Երկեր | » |
| 48 | Աստղիկ | Դշոխ գ. Վան | 13 | » | » | » |
| 49 | Բաղդասարեան Առաքել | Ղարաքիլիսէ | 7 | որդ | | ոչ |
| 50 | » Յակոբ | Ալճաւազ | 12 | մայր | Վաղարշապ-տ | » |
| 51 | Բոչոյեան Իֆօ | » | 6 | » | » | » |
| 52 | Գուլօ | Շատախ | 7 | որդ | | ոչ |
| | » | Կլէթա | 10 | մայր | Բորփալու | » |
| 53 | Գիւլնազ | Ալճաւազ | 12 | որդ | | » |
| 54 | Գեղամ | Արդունք | 13 | » | | » |
| 55 | Գասպար | Ալճաւազ | 12 | մայր | Էջմիածին | այո |
| 56 | Գրիգոր | Պղտիկ գիւղ | 13 | որդ | | ոչ |
| 57 | Գրիգոր | Պուլանըխ | 14 | որդ | | այո |
| 58 | Գաբրիէլ | Շիտանա | 13 | մայր | Թալիշ | » |
| 59 | Գարեգին | Լիզ | 13 | որդ | | ոչ |
| 60 | Գէորգ | Նաանա | 10 | » | | » |
| 61 | Գարմիլ | Վան | 8 | » | | » |
| 62 | Գիւլիզար | Այնալու | 10 | » | | » |
| 63 | Գրիգոր | Շատախ | 10 | » | | » |
| 64 | Գէորգեան Մինաս | Վան | 6 | » | | » |
| 65 | » Վասիլ | Տափաւալ | 5 | » | | » |
| 66 | » Գեղամ | Վան | 10 | մայր | Վաղարշապ-տ | այո |
| 67 | » Գիդան | » | 11 | » | Օշական | ոչ |
| 68 | » Սոսկօ | Արտամէտ | 2 | » | Վաղարշապ-տ | » |
| 69 | Գրիգորեան Խաչատուր | Ծաղկա գիւղ | 11 | որդ | | » |
| 70 | » Սեդրակ | Բերդակ | 9 | հայր | Վաղարշապ-տ | » |
| 71 | » Արամ | Ալաշկերտ | 12 | հայր | » | » |
| 72 | » Վարդանուշ | Արտամէտ | 7 | մայր | » | » |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 73 | Գալստեան Յովհաննէս | Վան | 12 | հայր | Մարգարա | " | |
| 74 | " Արշակ | » | 8 | » | Վաղարշապ-տ | " | |
| 75 | " Գարեգին | » | 14 | հայր-մայր | " | այո | |
| 76 | " Սահակ | Նարտաշ | 14 | հայր | " | " | |
| 77 | Գաբրիէլեան Դանիէլ | Վան | 11 | հայր | " | " | |
| 78 | » Էդուարդ | » | 10 | » | " | " | |
| 79 | Գասպարեան Գիւլիզար | Տիրիկ | 11 | » | " | ոչ | |
| 80 | Գեանջիցեան Գէորգ | Ալճաւազ | 11 | որբ | | " | |
| 81 | Դութեան Աղաւնի | Աթանաս | 5 | մայր | Վաղարշապ-տ | այո | |
| 82 | » Նորայր | » | 8 | » | | " | |
| 83 | Դանիէլեան Յակոբ | Ալճաւազ | 6 | » | " | ոչ | |
| 84 | Դարմոյեան Մեսրոպ | Կարվալ | 11 | հայր | " | այո | |
| 85 | Դանիէլեան Արգուն | Մանազկերտ | 14 | » | Մարգարա | " | |
| 86 | Եսթեր | Սևան | 6 | մայր | Վաղարշապ-տ | ոչ | |
| 87 | Եղնօ | Հաղշտան | 6 | հայր | Վերադարձ. է | " | |
| 88 | Եսայի | » | 4 | " | » | " | |
| 89 | Երանուհի | Վան | 12 | որբ | | " | |
| 90 | Ելմոն | Խրոխտոն | 17 | » | | " | |
| 91 | Եղիշէ | Վան | 7 | » | | " | |
| 92 | Եղոյեան Սուրէն | Արճէշ | 8 | հայր | Վաղարշապ-տ | ոչ | |
| 93 | Եղիազարեան Սաթիկ | Ոշոխ | 13 | » | » | " | |
| 94 | » Գրիգոր | Վան | 10 | որբ | | " | Միականի |
| 95 | Եսթեր | Գըզըլ դաղ | 5 | » | | " | |
| 96 | Եփիկեան Շօղօ | Վան | 13 | մայր | Վաղարշապ-տ | " | |
| 97 | Զարուհի | Ոսպաշէն | 12 | որբ | | ոչ | |
| 98 | Զարտար | Փշունից | 10 | մայր | Էջմիածին | " | |
| 99 | Զինէ | Գլաթ | 12 | որբ | | " | |
| 100 | Զաքարեան Պետրոս | Քիզան | 7 | մայր | Էջմիածին | " | |
| 101 | Թագուհի | Ոսկավ | 10 | որբ | | այո | |
| 102 | Թառոյեան Իսկուհի | Վան | 4 | մայր | Վաղարշապ-տ | ոչ | |
| 103 | Թովմասեան Մաքրուհի | Բերկրի | 4 | որբ | | " | |
| 104 | Իսկուհի | Ալճաւազ | 14 | որբ | | այո | |
| 105 | » (Իսկիմրել) | Աւանց | 11 | » | | ոչ | |
| 106 | Լուսօ | Ալճաւազ | 8 | հայր-մայր | Էջմիածին | " | |
| 107 | Լուսիկ | Խրից գիւղ | 12 | որբ | | " | |
| 108 | Լուսիկ | | | | | | |
| 109 | Խասօ | Պատնոց | 4 | մայր | Էջմիածին | " | |
| 110 | Խաչատրեան Սարգիս | Խումար | 11 | որբ | | " | |
| 111 | Խոչոյեան Յարեթ | Բաղէշ | 8 | որբ | | ոչ | |
| 112 | Խաչոյեան Սիրուշ | Ալճաւազ | 8 | » | | " | |
| 113 | Խաչատուր | Կզզի | 12 | » | | " | |
| 114 | Խաչոյեան Սիրուն | Պիտակ | 9 | հայր | Անյայտ | " | |
| 115 | Խաչատրեան Սարգիս | Շատախ | 11 | որբ | | ոչ | |
| 116 | » Յովհաննէս | Արճէշ | 13 | մայր | Վաղարշապ-տ | այո | |
| 117 | » Մուշեղ | Վան | 10 | հայր | Մարգարա | ոչ | |
| 118 | Կարապետեան Արտուշ | Արճէշ | 12 | մայր | Վաղարշապ-տ | ոչ | |
| 119 | » Սաթիկ | Ալճաւազ | 5 | որբ | | " | |
| 120 | » Սիրանուշ | Վաղարշապատ | 9 | հայր | Մարգարա | " | |
| 121 | Կարապետ | Թիմար | 11 | որբ | | " | |
| 122 | Կոչէ | | | | | | |
| 123 | Հայկանուշ | Արտամէտ | 15 | հայր-մայր | Ամերիկա-Իգ. | ոչ | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 124 | Համազասպ | Տնաշէն | 12 | որբ | | ոչ |
| 125 | Հայկանուշ | Շատախ | 12 | » | | " |
| 126 | » | Կեսաւաշ | lo | » | | " |
| 127 | » | Վան | 16 | » | | " |
| 128 | » | Ալճաւազ | 13 | մայր | Էջմիածին | " |
| 129 | Հռփսիմէ | Մարմար | 13 | » | » | " |
| 130 | Համօ | Էւէրէկ | 5 | » | Անյայտ | " |
| 131 | Հայկակեան Հրանտ | Վան | 4 | որբ | | " |
| 132 | Համբարձում | Կիւզաղ | 11 | հայր-մայր | Էջմիածին | " |
| 133 | Հայրապետեան Խաչիկ | Խարբերդ | 9 | որբ | | " |
| 134 | Ղուկաս | Կոչնակ | 14 | որբ | | այո |
| 135 | » | Կոչորան | 10 | մայր | Էջմիածին | " |
| 136 | Ղուկասեան Անտոն | Մարմար | 10 | մայր | Էջմիածին | ոչ |
| 137 | Ղազարեան Հայկ | Գուլանըխ | 8 | որբ | | " |
| 138 | » Մարիամ | Բատնոց | 8 | մայր | Վաղարշապ-տ | " |
| 139 | » Եսայի | Բոնդակ | 5 | » | » | " |
| 140 | Միսակ | Ծաղակ | 10 | որբ | | ոչ |
| 141 | Մուշեղ | Համադան | 10 | » | | " |
| 142 | » | Ղարաքէշիշ | 10 | մայր | Էջմիածին | " |
| 143 | » | » | 9 | մայր-հայր | Էջմիածին | այո |
| 144 | Մարգարիտ | Սնթապ | 18 | որբ | » | " |
| | » | Կուրթող | 16 | » | | ոչ |
| 145 | Մարգարեան Սահակ | Կարկառ | 14 | հայր | Մարգարա | ոչ |
| 146 | Մուրադեան Յովհաննէս | Մոքս Սու. | 11 | որբ | | " |
| 147 | Մկրտչեան Հայրիկ | Արտամէտ | 3 | " | | " |
| 148 | Մկրտիչ | » | 2 | " | | " |
| 149 | Մատուզիկ | | 2 | " | | " |
| 150 | Մարիամ | Կլաթակուչ | 16 | " | | այո |
| 151 | Միհրան | Ղլաթազաղ | 14 | " | | " |
| 152 | Մարկոս | Ագիդ | 13 | " | | " |
| 153 | Մուրադ | Շատախ | " | - | | " |
| 154 | Մխիթար | Մոխրաբերդ | 14 | հայր | Նախիջեւան | " |
| 155 | Մխիթարեան Մկրտիչ | Կեսաւաշ | 13 | որբ | | " |
| 156 | Մեսրոպ | Երեւան | 14 | մայր | Աշտարակ | ոչ |
| 157 | Մարտիրոսեան Հայկանուշ | Մուշ | 8 | որբ | | ոչ |
| 158 | » Արշալոյս | Վան | | | | " |
| 159 | Մուրադեան Եխնօ | Խարբերդ | 10 | հայր | Թիֆլիս | " |
| 160 | Մարինա | Կլէթա | 10 | մայր | Էջմիածին | " |
| 161 | Մայրանուշ | Վան | 16 | որբ | | ոչ |
| 162 | Մաքրուհի | Ուրթակ | 10 | » | | այո |
| 163 | Մարգարիտ | Վաղարշապատ | 10 | հայր | Էջմիածին | ոչ |
| 164 | Մատուզիկ | | 2 | | | " |
| 165 | Մանիշակ | Որճէշ | 13 | որբ | | |
| 166 | Մկրտչեան Ասատուր | Վան | 6 | հայր | Կ. Պոլիս | ոչ |
| 167 | " Նորայր | Արտամէտ | 7 | » | » | " |
| 168 | " Տիգրան | Վան | 7 | մայր | Վաղարշապ-տ | " |
| 169 | " Աղասի | » | 5 | » | " | " |
| 170 | Միրաքեան Մկրտիչ | Խարական | 8 | » | " | " |
| 171 | Տ. Մինասեան Կարապետ | Ղարաքիլիսէ | 6 | » | " | " |
| 172 | » Անդրանիկ | » | 10 | » | " | " |
| 173 | Մինասեան Անդրին | | 4 | որբ | | " |
| 174 | Մանուկեան Գասպար | Ալաշկերտ | 8 | մայր | | " |
| 175 | » Արբէն | Վան | 14 | » | " | " |
| 176 | Մելքոնեան Վահրամ | » | 13 | » | " | այո |
| 177 | » Խիլքօ | Բատնոց | 10 | » | " | " |
| 178 | Միլոյեան Մուշեղ | Ալճաւազ | 7 | որբ | " | " |
| 179 | Մկրտիչ | Ակնուբերդ | 11 | " | " | " |
| 180 | Մուրադեան Եղօ | Բատնոց | 10 | մայր | Վաղարշապ-տ | " |
| 181 | Մելիքեան Հազար | Ալճաւազ | 9 | " | Օշական | |
| 182 | Մովսէսեան Սերոբ | Վան | 10 | " | Վաղարշապ-տ | " |
| 183 | Մուրադեան Ջարօ | Խլաթ | 13 | որբ | | " |
| | | | | | | " |